1916 № 33.—Օգոստոսի 14

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաարադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՄՈՌԱՑՈՒԱԾ ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

Ներկայ համաշխարհային պատերազմը այնպիսի յեղաշրջում է առաջ բերել իր արհաւիրքներով, որի նմանը տեսնուած չէ մարդկութեան պատմութեան մէջ։ Նոյնը կարելի է ասել և Տաճկահայերի այժմեան վիճակի վերաբերութեամբ։ Չնայելով մեր ազգային Բարեգործական և Նպաստամատոյց բոլոր ընկերութեանց և ժամանակաւոր Յանձնաժողովների ճիգերին, Ռուսաստանի քաղաքների և համայնքների (զեմստվոյի) միութեանց զոհաբերութեանց, Հիւսիսային Ամերիկայի և Անգլիացւոց հայանպաստ ընկերութեանց օգնութեանց և Ռուս պետութեան հայ փախստականներին յատկացրած պետական խոշոր նպաստին, այնուամենայնիւ դեռ մնում են ամբողջ գաւառներ և զանգուածներ անտես արուած և կամ մոռացուած։

Այսպէս՝ Հին Բայազիդի շրջանի հայութիւնը՝ չնայելով երկու անգամ ստիպուած է եղել տնով տեղով գաղթելու, սակայն տակաւին չի ստանում պետական նպաստը։

Միւս կողմից տաճկահայ անթիւ ու անհամար որբերի խնդիրն է ծառանում մեր առաջ։

Այս որբերից, ազատուածներից բաւական խոշոր մասը պատսպարուած են զանազան որբանոցներում և վայելում են հայ հաստատութեանց խնամքը և յատկապէս Պետական խոշոր նպաստի շնորհիւ սոցա կեանքն ապահովուած է վտանգներից։

Ազատուած որբերից, որոնց որդեգրել են օտարներ, ընդ միշտ կորած են հայութեան համար, մանաւանդ եթէ Կովկասից էլ հեռու են տարուած։ Սակայն ոչ պակաս ուշադրութեան արժանի է վիճակը ու մանաւանդ ապագան այն որբերի, որոնք զանազան պատճառներով երեսի վրայ ընկած և աչքաթող եղած պատսպարուել են Ռուսահայաստանի ու Տաճկահայաստանի սահմանամերձ գաւառներում՝ Սուրմալի, Վաղարշապատ, Երևան և այլ ուրեք ռուսահայ ընտանիքներում, շատ անգամ բոլորովին որբերին անծանօթ ընտանիքներում։

Անշուշտ այս հայ ընտանիքներից շատերը մարդասիրութեամբ և կամ ազգասիրութեամբ դրդուած կամեցել են որբերին քաղցի ճանկերից փրկել և անտէրութիւնից ազատել, բայց որ շատ շատերն էլ կը լինեն, որ այդ որբերին իբրև ծառայ կը բանեցնեն, այդ էլ կասկածից դուրս է։

Մենք կարող ենք և այս ժամանակաւոր չարիքի առաջ աչք գոցել. ինչու չէ, թող և աշխատեն. ծառայեն

և այրեն. մենք մինչև անգամ կարող ենք և շատ շնորհակալ լինել այդպիսի հայ ընտանիքներից, որ հայ անտէր որբերի կեանք են փրկում։

Սակայն մի հանգամանք չպէտք է մոռանալ. այդ այն է, որ ամեն մէկն այդ որբերից ըստ մեծի մասին մի մեծ բազմաթիւ ընտանիքի, որ անհետ կորել են, միակ ներկայացուցիչն ու ժառանգորդն է. ուրեմն և ժառանգորդը այդ տան և օջախի։

Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ հայ ղեկավար մարմինները, գէթ Ս. Էջմիածինը, պէտք է ցուցակագրի այդ տեսակ որբերին մանրամասնօրէն և հոգայ, որ այդ որբերն ապագայում իրենց տանուտէրի տէր դառնան։

Նորին Կայսերական Բարձրութեան զինուորական մասի օգնական Եանուշկևիչի ափափոյ հրատարակուած յայտարարութիւնից յետոյ այս պահանջը հրամայողական է դառնում։

Շատ և մեծ ջանք և ծախք հարկաւոր չէ այս բանի համար։ Մայր Աթոռը կարող է այդ բանը հեշտութեամբ անել իւր գործակալութեանց միջոցով՝ կանխապէս տալով մանրամասն այդ մասին տպագրուած թերթիկներով մի հրահանգ։

Սկայ

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում տաճկական առաջխաղացութիւնը դադարեցրած է և ռուսները նորից սկսել են իրենց յարձակումները իր ամուր դիրքերում պահուած թշնամու վրայ։

Հիւսիսային գծերից այս շաբաթ տեղեկութիւններ են ստացուել միայն ծովային շերտից (Տրապիզոնից արևմուտք), ուր թիւրքերը փորձել են առաջ շարժուել, սակայն Սև ծովի տորմիղի հարուածների տակ յետ են մղուել։

Արևմտեան գծերում կռիւներ են տեղի ունեցել Բեմախ—Սվազ խճուղու վրայ, ուր թիւրքերը նոյնպէս ջարդ են կրել ու յետ մղուել։

Առանձնապէս ուժեղ կռիւներ տեղի ունեցան այս շաբաթ արևմտեան ռազմագծերի վրայ՝ Համիդ—Դիարբեքիրի ուղղութեամբ։ Այս կռիւների ճիշտ վայրը որոշ չէ։ Սակայն նկատի ունենալով «Բուրոխեան լեռների գանգուածքից դէպի արևմուտք» դարձուածքը, որ բերուած է պաշտօնական հաղորդագրութեան մէջ, պէտք է ենթադրել, որ նրանց թատերաբեմն է Մեղտի գետի (Գիւնեկսու) հովիտը։ Այս կռիւներում ռուսները յետ են շպրտել թիւրքերին և առաջ են շարժւում դէպի Տաւրոսեան լեռնաշղթան։

Բուն հարաւային գծերի կռիւներն այս շաբաթ աչքի էին ընկնում Վանայ լճի հիւսիսային և արևմտեան շրջանները։ Հիւսիսում թիւրքերը մի քանի անգամ փորձում են մօտենալ լճի ափին, որպէսզի Մուշ-Բաղէշի շրջանում գործող զօրքերի աջ թևն ապահովեն, սակայն միշտ յետ են մղւում։ Իսկ հարաւում ռուսները յետ շպրտելով թիւրքերին, նորից գրաւում են Մուշը։

Վերոյիշեալ կռիւների մէջ ռուսները մօտ երկու տասնեակ սպայ և մի քանի հարիւր ասկեար են գերել։

Պարսկական ճակատում յայտնի չէ թէ ինչ է կատարւում Բաղդադի ուղղութեան վրայ։ Այս շաբաթ այդ մասին տեղեկութիւններ չեն ստացուած.

Մուսուլի գծի վրայ կռիւները վերջին օրերս կենդանացել են Ուշնուի շրջանում։ Համաձայն վերջին հաղորդագրութեան ռուսներն այստեղ Րայաթի շրջանում ամսիս 10-ին շրջապատելով թիւրքական մի դիւիզիա՝ խիստ մեծ ջարդ են տուել, գերելով մօտ 10 սպայ և 1250 ասկեար։

## ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սալոնիկի ճակատում յուլիսի վերջերին սկսած պատերազմական գործողութիւնները խոշոր ճակատամարտի բնոյթ են առել։ Այս ճակատում սերբերը բռնել են ձախ թևը՝ Գլորենից մինչև Գևգելի, ֆրանսիացիք կենդրոնը՝ Գևգելիից մինչև Սերեսսիւկ, անգլիացիք աջ թևը՝ Սերեսից մինչև Օրֆանո։ Յուլիսի կէսերին տեղի են ունենում այստեղ ուժեղ հետախուզական գործողութիւններ և տեղական բնոյթ կրող կռիւներ, որոնց ընթացքում սերբերը նուաճում են Էժլին, իսկ ֆրանսացիք մի քանի գիւղեր Դոյրանի շրջանում։ Ամսոյս 7-ին կռիւը տարածւում է բոլոր գծերի վրայ և ընդհանուր ճակատամարտի բնոյթ ստանում։ Սկզբում դաշնակիցները որոշ յաջողութիւն են ունենում, սակայն ըստ վերջին տեղեկութեանց բուլգարները սկսել են նրանց աստիճանաբար յետ մղել դէպի իրենց գլխաւոր պաշտպանողական գծերը։ Առանձնապէս կատաղի են նրանց գրոհները թևերի վրայ՝ սերբերի և անգլիացիների դէմ։ Առաջիններին բուլղարները Ֆլորինայից քշել են դէպի հարաւ-արևելք՝ Օստրովօ լճի ափերը։ Կենտրոնի գծի վրայ ֆրանսացիք էլ յետ են քաշուել դէպի Ստրումիցա։ Այս բոլոր տեղեկութիւնները ցոյց են տալիս, որ Սալոնիկի ճակատում դաշնակիցները առանց նոր ուժեր կենտրոնացնելու չեն կարող բուլղարներին յետ շպրտել դէպի իրենց սահմանները, մի բան՝ որ այնքան անհրաժեշտ է փութացնելու Ռումանիայի հանդէս գալը Համաձայնութեան հետ։

## ԱՒՍՏՐՈՒԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում անցեալ տեսութեան մէջ ընդգծած համեմատական հանգիստը շարունակւում է։ Այս շաբաթ Գալիցիայում, Բրոդից հարաւ աւստրուգերմանացիք բաւական խոշոր ուժերով յարձակումներ սկսեցին ռուսների դէմ

Սակայն այս առաջխաղացութիւնը չզարգացաւ։ Ըստ երևոյթին թշնամու ուժերը չեն ներում իր գործողութիւնները այնպէս զարգացնելու, որ մասնակի յաջողութիւնները կարելի լինի ըստ կարելոյն օգտագործել։

Անգլու-Ֆրանսական ճակատում այս շաբաթ խոշոր չափի գործողութիւններ տեղի չեն ունեցել, բայց և այնպէս անգլիացիների և ֆրանսացիների առաջխաղացութիւնը Սոմի շրջանում և Վերդէնի մօտ շարունակւում է, թէև ինարկէ շատ դանդաղ։

Իտալական ճակատում նոյն դրութիւնն է, ինչ որ անգլու-ֆրանսականում։ Իտալացիք դանդաղ, բայց յամառօրէն շարժւում են դէպի Կարօ՝ շարունակ խլելով աւստրիացիներից այդ բարձրաւանդակի բնական ամրութիւնները և ճանապարհ բանալով դէպի Տրիէստ։

***

# Ներքին տեսութիւն

## ՊԱՇՏՊԱՆԵՆՔ ՀԱՅ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Ոևէ ժողովուրդի մտային ոյժերն ու թեաւորումները նրա բացառիկ հանճարների միջոցով կ'արտայայտուին։ Որքան լայնածաւալ ու ընդարձակ լինի ժողովրդի որակական ու քանակ-

կան կարողութիւնը, այնքան ուժգին ու անզուսպ կը լինի նրա դէպի կուլտուրան ունեցած բնազդն ու հակամիտութիւնը և այնքան վսեմ ու խոր կըլինի նրա հանճարների ստեղծագործութիւնները։ Բայց այդ հակամիտութիւնն ու մտքի թևաւորումները մէկ ազգի արգանդում խեղդուած պիտի մեռան, եթէ երբէք նրանց արտայայտող ոյժերը չը գնահատուէին ու չը պահպանուէին, նման այն հօտաւէտ և գեղեցիկ ծաղկին՝ որ ջրի կամ խնամքի պակասութիւնէն կը թոռմի և դալկահար գետին կընկնի։

Սօսքս բարոյական այն վատթար մթնոլորտի մասին է, որ ստեղծուած է այսօր մեր ազգային կենցաղավարութեան մէջ և որի հեղձուցիչ ազդեցութեանը ներքև մեր արուեստի մեհեանը ծանրօրէն է շնչում, մեր ցեղի հազուագիւտ ոյժերը հազիւ կարողանում են իրենց գոյութիւնը շիշտել և մեր գեղեցկագոյն ստեղծագործութիւնները միջակութիւնից մի քիչ բարձր աստիճանից անդին չեն կարողանում անցնել։

Ցիրաւի արդի մեր գրականութիւնը հոգեսպառ մի վիճակ ունի. վտիտ է նա և խորագոյն թռիչքներէ զուրկ, մեր մէջ կարծես արուեստի կատարելութեան մի սահմանագիծ որոշուած է և այդ սահմանագծէն անդին, այլևս հայ արուեստագէտը չի կարող սաւառնել, իր հոգեկան սլարձակման թափ տալ։

Մեզանում արուեստի ոևէ յեղաշրջում կամ արտայայտութիւն անզօր է իրեն համար զօրաւոր և մշտատև հանգրուաններ ստեղծելու, միշտ կը մնայ երերուն, միգամած ու նոր ձևափոխութիւններու և հողմերու ենթակայ։

Ոմանք այդ երևոյթների պատճառը համարում են մեր քաղաքական փոթորկալից կեանքը։ Նրանց կարծիքով Տաճկահայ ժողովուրդի ճակատագիրը այն աստիճան կլանած է մեր ազգային-հասարակական մթնոլորտը, որ մի սև մղձաւանջի նման չոքել է մեր գիտակցութեան երկնակամարի վրայ, ուստի և մենք չենք կարողանում ուրիշ բաների մասին մտածել, հոգեկան ապրումներու, գեղարուեստական խոհերու նուիրուիլ։ Ի հարկէ այս տարկութիւնը ունի իւր իրաւացի կողմը, որովհետև գեղարուեստը իր արտայայտութեան համար խաղաղ և անդորր ժամանակաշրջանի կը կարօտի։ Բայց երբ մեր քաղաքական-ընկերային կեանքը փոթորկալից ու խառնակ եղած չէ, մեր պատմութեան ընթացքում երբ ունեցած ենք խաղաղութեան համեմատաբար աւելի երկար մի շրջան, որ կարողանայինք միայն մեր մտածողութիւնը կենտրոնացնել մեր կուլտուրական զարգացման վրայ։

Ուրիշները արդի հայ գրականութեան տիեզերական թռիչքներէ զուրկ լինելու հանգամանքին պատճառը համարում են մեր գրագէտներու սահմանափակ կրթութիւնը, իմացական-գիտական խոր և բազմապիսի զարգացման չքաւորութիւնը։

Այս կարծիքը շատ մեծ ճշմարտութիւն է պարունակում իր մէջ, որովհետև տաղանդը, որ արուեստագէտը ժառանգութեամբ կ՚ընդունի, այնքան աւելի հզօր ու բարձր կը լինի, որքան նա միանայ գիտական-իմաստասիրական ծանօթութեանց աւելի ընդարձակ ու լայն պաշարի։ Ճշմարիտ արուեստը կատարելութեան բարձրագոյն կչեռքում փիլիսոփայութեան հետ կը զուգաւորուի, խօսքի ու թրթիռի վարագոյրովը քօղաւորուած գեղեցիկ մի յաւերժահարսի կը նմանի, որու թափանցիկ ու պայծառ աչքերի խորքը տիեզերական խորհուրդն է, որ կը թրթռայ։ Որքան մտքեր ու ճշմարտութիւններ ամայի լինին այդ աչքերուն խորքը, այնքան վարագոյրի յետև թաղնուած կախարդական ազդեցութիւնը թոյլ և արհեստական կը լինի։

Բայց մի՞թէ իրենք գրագէտներն են մեղաւոր, որ չունին իմացական բարձրագոյն զարգացում, որ իրենց տարիքի որոշ հասունութեան ընթացքում, արդէն իրենց խօսքը ասած աւարտած լինելով, կ՚սկսին թառամիլ և անզօր կը դառնան տաղանդի նոր շողարձակումներու։ Մի՞թէ հայ գրականութիւնն է մեղաւորը, որ այսօր լաթի պէս ձգուած է ձեռքէ ձեռք, սրա-նրա բերան, առանց կարենալ պահելու իւր իսկական արժէքը, բարոյական վեհութիւնը։

Ո՛չ երբէք. որովհետև քանի՛ ընդունակ և տաղանդի նշոյլները ցոյց տուող երիտասարդ ոյժերը ուղարկեցինք գիտութեան, լոյսի կենտրոնները, նրանց հոգեկան ժառանգութիւնները աւելի կրթելու և ազնուացնելու համար. չենք ժխտում, որ համբակ ու անպէտք ուսանողների մի բազմութիւն ունինք Եւրոպայում, որոնք օտար հորիզոնների ներքև փոխանակ հայրենիքի ապագայ բարօրութեան նուիրուելու բաղձանքները թրթռացնելու իրենց հոգիների խորքը, օտարամոլորութեամբ և մեծամտութեամբ բռնուում են և երես են դարձնում մայրենի մշակոյթէն (կուլտուրա) ու կեանքէն։

Փոխանակ այդպիսիներու համար այսքան նիւթական զոհողութիւն ունայն տեղը թափելու, լաւագոյն կերպով ընտրուած մեր յուսատու երիտասարդներու վրայ եթէ ծախսուէին, որքան ազգը օգտուէր պիտի նրանցից ապագային և հայ գրականութիւնն ու արուեստը պիտի ճոխանային ու գեղեցկանային։

Կայ տակաւին ուրիշ աւելի դժուար ու կնճռոտ մի մղձաւանջ, որ ծանրացած է մեր գրագէտներու և հասարակական մշակներու ուսերին—ապրուստի մղձաւանջը...։

Հայ գրողներու նիւթական ապահովութեան խնդրի մասին բաւական գրուեցաւ վերջերս հայ մամուլում։ Հայ արուեստագէտի ամենամեծ թշնամին ապրելու մտահոգութիւնն է, որ մի թունաւոր օձի պէս միշտ գալարուած է նրա գլխավերևը և կաշկանդած նրա հոգեկան խոյանքները։

Մեր մի շարք գրողներն ու հասարակական գործիչները նիւթական զրկանքների ճիրաններում աւանդած են իրենց հոգին և ուրիշներ այդ դժնդակ բեռան ծանրութիւնէն ընկրկելով թառամած ու չորացած են իրենց գործունէութեան կէս ճանապարհին։ Այդպիսի օրինակները շատ ունինք մեր գրականութեան պատմութիւնէն, պերճախօս փաստեր նաև մեր արդի կեանքէն։

Դեռ լաւ է որ համեմատած հայկական չոր միջավայրին՝ մեր խորթացած երիտասարդութեան հայ գրականութեան հանդէպ ցոյց տուած քննադատելի վերաբերմունքին և նիւթական ու բարոյական բացասական պայմաններին, մենք ունեցած ենք այնպիսի գրականութիւն, մտքի և գրչի այնպիսի գործունէութիւն, որ պատիւ կը բերէ մեզ և դեռ այդ գրականութեան ներկայացուցիչները՝ թէև ծերացած ու հնացած՝ բայց տակաւին կ՚ապրին ու կ՚իշխեն այսօր։

Ապահովենք ապրող հայ գրողներու նիւթական անձուկ կեանքը. հոգ տանենք նոր և յուսատու տաղանդներու իմացական զարգացման, ուղարկելով նրանց Եւրոպական մտքի կենտրոնները. ստեղծենք գրական մի լաւագոյն մթնոլորտ, որպէսզի նորերը պատեհութիւն ունենան արտայայտուելու և երևան գալու, այն ժամանակ հայ գրականութիւնը ներկայ ամուլ և սահմանափակ կեանքից դուրս կըգայ և աւելի ընդարձակ ու լուսաւոր հորիզոններ կ՚ընդգրկէ։

Ծ. Թորգոնեան

(Վերջ)

---

## ԵՐԿՈՒ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐ

Երկու կարևորագոյն խնդիրներ զբաղեցնում են այս րոպէիս մեր հասարակական մթնոլորտը։

Մէկը՝ հազիւ երկիրը տեղաւորուած՝ գաղթական ժողովուրդի վերադարձն է, միւսը՝ Հայաստանի գաղթաւորման մասին «Рѣчь» թերթի № 205-ում հրատարակուած յօդուածն է, որ թարգմանել էինք «Համբաւաբերի № 32-ում։

Երկու խնդիրներն էլ այնքան հրատապ են, որ կարժէ հայ ղեկավար տարրերը անդրադառնան ու իրենց կարծիքներն արտայայտեն։

Վասպուրականից ու Տարօնից նահանջած ժողովուրդը բարեբաղդաբար մի կերպ կարողացել է ողջ պրծնել և ֆիզիքապէս քիչ վնասների ենթարկուել. Թէև նիւթական ահագին վնասներ է կրել նա, տեղնուտեղը թողնելով հազիւ սկսուած վերաշինութեան աշխատանքները:

Հարկաւ այդ գզգզուած ու բազմատանջ ժողովուրդի նիւթական ծանր կարիքներն հոգալու համար հայոց կազմակերպութիւնները պէտք եղած միջոցների ձեռնարկել են արդէն, միայն թէ կարևոր է յիշատակել, որ իրենց գաղթական երիտասարդներն աւելի պէտք է ձեռնամուխ լինեն ժողովուրդի կարիքների բաւարարման գործին, քանի որ Ռուսահայ մտաւորականներից մեծ մասը զինուորագրութեան և այլ պատճառներով այնքան էլ ի վիճակի չէ օժանդակութեան ձեռք կարկառելու:

Բարեբաղդաբար հազար տեղերից յօշոտուած գաղթական ժողովուրդի բարոյական արիութիւնը դեռ ևս չի նուազել:

Նրա սրտում անմար ու անյողդողդ է հայրենատենչ ոգին, նա դիւրաւ չի լքել իր փայփայած, իր արիւնովը ոռոգուած հողն ու ջուրը և վաղ թէ ուշ կրկին կը վազէ դէպի երկիր, իւր ստեղծագործ ոգով կրկին կը շէնցնէ ու կը ծաղկազարդէ հայրենի փլատակները:

Մեզ աւելի մտահոգութիւն պատճառողը այն ծրագիրն է, որ այս րոպէիս, ինչպէս տեղեկանում ենք, պատրաստւում է Ռուսական բարձր շրջաններում Հայաստանի գաղթաւորման մասին:

Տաճկահայաստանի քաղաքական ու հողատիրական առանձնայատուկ պայմաններն նկատի առնելով՝ այդ ծրագիրը կարող է իւր սեփական հողից զրկել այն ստուար հայութիւնը՝ որ բազմաթիւ դարերի անկապտելի ժառանգութեամբ ապրել է ու շնչել Հայաստանի լեռներում ու դաշտերում. Պահանջւում են սեփականութիւն հաստատող փաստաթղթերը այն ժողովուրդից՝ որի արիւնախում թշնամին, թիւրք կառավարութիւնը, հնարաւոր եղած ամեն միջոց թափել է հողազուրկ դարձնելու նրան, որ տարիներից ի վեր և մանաւանդ արդի պատերազմի ընթացքում փախստական հայերի կալուածները ապօրինի միջոցներով հաստատել է թիւրք ու քիւրդ բէկերի և սեփականազուրկ, թափառաշրջիկ «միւհէճիրների» (գաղթական) վրայ:

Վերջապէս տաճկական կոտորածներից հազիւ մազապուրծ ճողոպրած փախստական կանայք ու երեխաները, որոնք հազիւ հազ կարողացել են իրենց գլուխը միայն մի կերպ պրծացնել, այն էլ յօշոտուած ու արիւնաքամ, կարող են միթէ մտածել կալուածաթղթերի պահպանման մասին, երևակայելով որ իրենց ազատարարները մի օր պիտի պահանջեն իրենցից այդ փաստաթղթերը, որոնց մասին ոևէ հասկացողութիւն իսկ չունեին, որովհետև պէտք է նկատի ունենալ, որ այդ բանը երկրում չկայ, գոնեա տների վերաբերութեամբ, մի բան՝ որ նոյնիսկ Ռուսաստանի պէս շատ շատ աւելի առաջադէմ ու բարեկարգ մի պետութեան գիւղացիներն անգամ չունեին...:

Չպէտք է մոռանալ նաև մի աւելի էական հանգամանք, որ նոյնիսկ տաճիկ կառավարութիւնը տների վերաբերութեամբ այդպիսի խնդիրներ չէ յարուցել հայերի դէմ. իսկ Տաճկահայաստանի հողային կնճռոտ խնդրի վերաբերութեամբ՝ մէջլիսի—մէբուսանում (պատգամաւորական ժողովում) տաճկահայ պատգամաւորները անդադար բողոքել են:

Ի՞նչ միջոցներով ուրեմն պիտի իրագործուի այդ յայտարարութիւնը, որպէսզի բազմաչարչար հայ ժողովուրդը չը զրկուի իր հողային իրաւունքներից:

Անհրաժեշտ է որ Հայաստանի գաղթաւորման ծրագիրը մշակողները նկատի առնեն մեր երկրի առանձնայատուկ պայմանները, նրանք պէտք է տեղեակ լինեն նահատակ ժողովրդի ներկայ բացառիկ պայմաններին:

Կենսական նշանակութիւն ունեցող մի խնդիր է այս, որ ազդեցութիւն ունի տաճկահայ ժողովուրդի ճակատագրին վրայ, հետևաբար պէտք է զգուշութեամբ խաղալ նրա չարաբաղդ ճակատագրին հետ:

Հայորդի

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐԻ ՆՈՐ ԳԱՂԹԸ

Ինչպէս յայտնի է, մօտ 50,000 գաղթական ժողովուրդը զինուորակ. իշխ. հրամանով նահանջեց Մուշի, Բիթլիսի շրջաններէն ու Վասպուրականէն: Ստացուած տեղեկութիւնների և հեռագրերի համաձայն՝ Մուշում մնացել են 23 հոգի, սպանուել են 120—200 և 100 մարդ էլ իսպառ անյայտացել են: Մանազկերտից Ալաշկերտ անցել են 1000 հոգի: Վարդոյում եղած 5,000 փախստականները Խնուս վերադարձան, Ղուրայից Բասէն են գնացել 5,000 փախստականներ: Սասունի և Մուշի փախստականները՝ թւով 7,500 հոգի, մնացին Խնուսում և շրջակայքում:

Վասպուրականի փախստականների մէկ մասը անվնաս անցել են Ջուղա, իսկ աւելի ստուար մասը եկել են Իգդիր. ճանապարհին անվտանգ են մնացել: Նրանք իրենց հետները բերել են իրենց անասունները: Այդ փախստականներից 10,000 հոգի անցել են Երևան, 12,000 հոգի Իգդիր և շրջակայքը, Արծանի 2,000, Իջևանում, Ղըզըլ Դիզայում և այլուր ևս մօտ 2000 հոգի:

Վան քաղաքում անպաշտպան տների գոյքերն ու ապրանքները կողոպտուել են, նիւթական վնասներ և մեծ զրկանքներ է կրել հազիւ վերաշինութեան գործին ձեռք զարկած փախստական ժողովուրդը:

Վերջերս լուր ստացուեց, որ իրաւունք է տրուել Վասպուրականի փախստականներին վերադառնալու իրենց տեղերը և վերսկսելու վերաշինութեան խանգարուած աշխատանքը: Այդ հրամանը վերաբերում է միայն տղամարդկանց, իսկ կանանց և երեխաների վերադարձը արգելւում է:

Այդ առթիւ Հ. Կ. Կոմիտէին զանազան տեղերից հեռագրեր են խփուած սննդական և բժշկական անմիջական օգնութիւն ուղարկելու համար:

Մեծ թւով տաճկահայ որբեր ուղարկւում են արդէն դէպի Կովկաս, որոնք պիտի տեղաւորուին յարմար վայրերում: Գեն. Թամամշեանը դիմել է Հ. Կ. Կոմիտէին և խնդրել, որ բոլոր որբանոցների և որբերի լրիւ ցանկը ուղարկուի իրեն. այդ առթիւ Կոմիտէն շրջաբերականներով արդէն դիմել է բոլոր որբանոցներին:

Վանի և Բիթլիսի Ամերիկական նախկին միսիոնարները ուղևորուել են Վան՝ գաղթականներին օգնութիւն հասցնելու համար:

## Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆԸ ԻՒՐ ԴՊՐՈՑՆԵՐԻՆ

Տպագրելով ստորև գրուած դպրոցների ցուցակը և ճիւղերին ուղարկուած շրջաբերականի պատճէնը, Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը խնդրում է այն ճիւղերից, որոնց շրջանում կան նպաստառու դպրոցներ, եթէ տակաւին չեն ստացել այդ շրջաբերականը, շուտով յայտնեն Խորհրդին:

### ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ Կ. Հ. Բ. ԸՆԿ. ՃԻՒՂԵՐԻՆ, ՈՐՈՆՑ ՇՐՋԱՆՈՒՄ ԳՏՆՒՈՒՄ ԵՆ ՆՊԱՍՏՈՒՈՂ ԴՊՐՈՑՆԵՐ:

Խորհուրդս այսու յայտնում է Վարչութեանդ, որ ներկայ 1916—17 ուսումնարանական տարում ի նկատի առնելով տիրող դրութիւնը, որոշեց բացի սովորական նպաստից, տալ և յաւելումն Միայն թէ խնդրում ենք ուշադրութեան առնէք, որ այս յաւելումն հոգաբարձութիւնները չընդունեն ի հաշիւ իրենց տալիք գումարի և ուսուցիչներին ռոճիկներ յատկացնեն նախկին տարիների չափ

այլ որ իրենք էլ աշխատեն իրենց կողմից աւելացնեն, հասցնելով նրանց ռոճիկները ոչ պակաս քան 450—500 ռուբլու, յարմարութիւններով, այլապէս դասատուներ հրաւիրելը բաւական կը ծանրանայ։

Ուղարկելով շրջանից դպրոցներին յատկացրած նպաստների ցուցակը, Խորհուրդս խնդրում է՝ 1) Որ դպրոցը բացուի ոչ ուշ քան սեպտեմբերի 1-ը, հնարաւոր դէպքում նոյն իսկ աւելի վաղ. 2) Հրաւիրուեն արտօնութիւն ունեցող միջնակարգ դպրոցաւարտ ուսուցիչ-ուսուցչուհիներ. 3) Գործադրուեն ընդունուած դասագրքեր. 4) Աշխատել կարելոյն չափ աւելացնել աշակերտ-աշակերտուհիների թիւը. 5) Դպրոցական շինութիւններն ունենան անհրաժեշտ յարմարութիւններ, իսկ դպրոցը՝ անհրաժեշտ ուսումնարանական պիտոյքներ. 6) Տարեսկզբի և տարեվերջի տեղեկագրերը վարչութեանդ միջոցով ժամանակին ուղարկուեն Խորհրդիս և անյապաղ տեղեկութիւն տրուի դպրոցի բացման մասին։ Ընդսմին ուղարկւում է «. . . » օրին. տարեսկզբի և տարեվերջի տեղեկագրից, խնդրելով ժամանակին լրացնել և ուղարկել Խորհրդիս։ Տարեսկզբի տեղեկագրերը ստանալուց յետոյ միայն կարգադրութիւն կըլինի խնդրելիք նպաստների մասին։ Անկախ այդ բանից՝ ուսուցիչ-ուսուցչուհիների կարևորութեան դէպքում շուտով տեղեկացնէք, թէ շրջանից որ դպրոցի համար հարկաւոր են ուսուցիչ-ուսուցչուհիներ և ինչ պայմաններով, այսինքն տրուելիք ռոճկի քանակը. բնակարան, վառելիք և այլ յարմարութիւններ տրուելու են թէ ոչ։

Նախագահ Խորհրդի՝ Ս. Յարութիւնեանց
Անդամ-քարտուղար՝ Յ. Շահնազարեան

## ՑՈՒՑԱԿ

Կ. Հ. Բ. Ընկ. նպաստներով պահուող դպրոցների 1916—1917 դպրոցական տարուայ

| Հ. Հ. | Գիւղի կամ դպրոցի անունը | Ընկերութեան ճիւղի շրջանում | Նպաստների չափը | Յաւելուած | Ընդամենը |
|---|---|---|---|---|---|
| 1 | Բողազ-Քեասան | Ալէքսանդրապոլ | 100 | 50 | 150 |
| 2 | Խլի-Ղարաքլիսէ | » | 200 | 50 | 250 |
| 3 | Հաջի-Նազար | » | 120 | 36 | 156 |
| 4 | Ղազանչի | » | 180 | 45 | 225 |
| 5 | Մեծ-Քէյթի | » | 300 | 45 | 345 |
| 6 | Մեծ-Քափանակ | » | 200 | 50 | 250 |
| 7 | Մեծ-Բաշ | » | 100 | 50 | 150 |
| 8 | Նորաշէն | » | 300 | 45 | 345 |
| 9 | Չրախլի | » | 100 | 50 | 150 |
| 10 | Չորլի | » | 200 | 50 | 250 |
| 11 | Ջաջուռ | » | 200 | 50 | 250 |
| 12 | Մեծ-Արխալու | » | 200 | 50 | 250 |
| 13 | Սպիտակ | » | 100 | — | 100 |
| 14 | Աղքիլիսա | » | 100 | — | 100 |
| 15 | Մեծ-Պարնի | » | 100 | — | 100 |
| 16 | Գեսրան | » | 100 | — | 100 |
| 17 | Ն. և Վ. Ղանլիջան | » | 100 | — | 100 |
| 18 | Ղալթաղչի | » | 100 | — | 100 |
| 19 | Արուլ | Ախալքալաքի | 200 | 50 | 250 |
| 20 | Արագեալ | » | 200 | 50 | 250 |
| 21 | Գիւնբերտա | » | 200 | 50 | 250 |
| 22 | Սամսար | » | 200 | 50 | 250 |
| 23 | Ջիգրաշէն | » | 200 | 50 | 250 |
| 24 | Սուլդա | » | 250 | 37-50 | 287-50 |
| 25 | Տիլիք | » | 200 | 50 | 250 |
| 26 | Ծուղրութ | Ախալցխայի | 200 | 50 | 250 |
| 27 | Տամալա | » | 200 | 50 | 250 |
| 28 | Հաղպատ | Բորչալուի | 300 | 45 | 345 |
| 29 | Սանահին | » | 1000 | 100 | 1100 |
| 30 | Ախալքալակ գիւղ | Գորուայ | 600 | 60 | 660 |
| 31 | Կասպի | » | 200 | 50 | 250 |
| 32 | Քախուրէլ | » | 1000 | 100 | 1100 |
| 33 | Ղարաբուլաղ | Գանձակի | 200 | 50 | 250 |
| 34 | Նոր-Արմաւիր | » | 100 | 50 | 150 |
| 35 | Գառնակեր | » | 100 | 50 | 150 |
| 36 | Կորինապատ | » | 200 | 50 | 250 |
| 37 | Համզաչիման | Դիլիջանի | 200 | 50 | 250 |
| 38 | Դուշէթ | Դուշէթի | 200 | 50 | 250 |
| 39 | Ախալգորի | » | 400 | 40 | 440 |
| 40 | Մուխրան | » | 300 | 45 | 345 |
| 41 | Քեօրփալու | Երևանի | 100 | 50 | 150 |
| 42 | Բաշ | » | 200 | 50 | 250 |
| 43 | Քարվանսարա | » | 150 | 45 | 195 |
| 44 | Թելէթ | Թիֆլիսի | 200 | 50 | 250 |
| 45 | Կումիս | » | 200 | 50 | 250 |
| 46 | Կոդա-Մուխաթ | » | 200 | 50 | 250 |
| 47 | Շուլինդիս | » | 200 | 50 | 250 |
| 48 | Սագարէջօ | » | 200 | 50 | 250 |
| 49 | Վաշլովան | » | 450 | 45 | 495 |
| 50 | Քարդին-Թելէթ | » | 300 | 45 | 345 |
| 51 | Ախալսօփել | » | 200 | 50 | 250 |
| 52 | Ուրխաթուբան | Թէլաւի | 500 | 45 | 545 |
| 53 | Թէլաւ (մանկ.պարտ.) | » | 300 | — | 300 |
| 54 | Մատան | » | 200 | — | 200 |
| 55 | Աթան | Լոռուայ | 200 | 50 | 250 |
| 56 | Գիւլագարակ | » | 200 | 50 | 250 |
| 57 | Գարդլաղ | Կուբանի | 100 | 50 | 150 |
| 58 | Խոյթա | » | 150 | 45 | 195 |
| 59 | Բաշ-Շիրակ | Կարսի | 200 | 50 | 250 |
| 60 | Բայրախտար | » | 100 | 50 | 150 |
| 61 | Մանրակ | » | 250 | 37-50 | 287-50 |
| 62 | Փիրուալի | » | 250 | 37-50 | 287-50 |
| 63 | Օջախլու | » | 100 | 50 | 150 |
| 64 | Երթափին | Հին-Նախիջևան | 300 | 45 | 345 |
| 65 | Փորադաշտ | » | 200 | 50 | 250 |
| 66 | Բարանա | Ղազախի | 100 | 50 | 150 |
| 67 | Թովուզ | » | 150 | 45 | 195 |
| 68 | Թաթլու | » | 100 | 50 | 150 |
| 69 | Ղալաչա | » | 100 | 50 | 150 |
| 70 | Ղազախ | » | 100 | 50 | 150 |
| 71 | Ներ. Կարմիր Աղբիւր | » | 200 | 50 | 250 |
| 72 | Ագարակ | Ղափանի | 100 | 50 | 150 |
| 73 | Ղարաբարան | » | 100 | 50 | 150 |
| 74 | Ճակատէն | » | 300 | 45 | 345 |
| 75 | Շրվինանց | » | 2300 | 230 | 2530 |
| 76 | Շիկահող | » | 100 | 50 | 150 |
| 77 | Վերին-Խոտանան | » | 300 | 45 | 345 |
| 78 | Խանքենդաւան | Ղարաբաղի | 200 | 50 | 250 |
| 79 | » | » | 200 | 50 | 250 |
| 80 | » | » | 200 | 50 | 250 |
| 81 | Դուբինկա | Մայկոպի | 150 | 45 | 195 |
| 82 | Դզմաշէն | Նոր-Բայազէտի | 200 | 50 | 250 |
| 83 | Նորադուզ | » | 300 | 45 | 345 |
| 84 | Ներքին-Ախտա | » | 250 | 37-50 | 287-50 |
| 85 | Ջիբուխլի | » | 400 | 40 | 440 |
| 86 | Ջրաղացներ | » | 300 | 45 | 345 |
| 87 | Ոնդամալ | » | 350 | 35 | 385 |
| 88 | Սոլակ | » | 200 | 50 | 250 |
| 89 | Փաշաքենդ | » | 200 | 50 | 250 |
| 90 | Օրդակլու | » | 200 | 50 | 250 |
| 91 | Քարվանսարա | » | 150 | 45 | 195 |
| 92 | Եայիջի | » | 200 | 50 | 250 |
| 93 | Ղուլալի | » | 100 | 50 | 150 |
| 94 | Ղշլաղ | » | 200 | 50 | 250 |
| 95 | Քեօլադռան | » | 100 | 50 | 150 |
| 96 | Ղարաքիլիսա | » | 250 | 37-50 | 287-50 |
| 97 | Սաչլու | » | 200 | 50 | 250 |
| 98 | Տամջլու | » | 200 | 50 | 250 |
| 99 | Ն. Ադիաման | » | 200 | 50 | 250 |
| 100 | Ջօլախաջ | » | 150 | 45 | 195 |
| 101 | Վարդաշէն | Նուխուայ | 200 | 50 | 250 |
| 102 | Ջորլու-Միրզաբէկլու | » | 100 | 50 | 150 |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 103 | Սուլթան-Նուխի | Նուխուայ | 100 | 50 | 150 |
| 104 | Գիրք | Շամախու | 1000 | 100 | 1100 |
| 105 | Ջխար | Ջխարի | 500 | 50 | 550 |
| 106 | Սուրամ | Սուրամի | 300 | 45 | 345 |
| 107 | Վաղա | » | 300 | 45 | 345 |
| 108 | Ցարսկիէ-Կոլոդցի | Սղնախի | 100 | 50 | 150 |
| 109 | Նուկրիան | » | 200 | — | 200 |
| 110 | Վելիսցիխէ | Վելիսցիխէի | 200 | 50 | 250 |
| 111 | Բազարճիւղ | Վաղարշապատի | 400 | 40 | 440 |
| 112 | Գեզըլու | » | 100 | 50 | 150 |
| 113 | Կարբի | » | 500 | 50 | 550 |
| 114 | Հանավանք | » | 200 | 50 | 250 |
| 115 | Ղուրդուղուլի | » | 100 | 50 | 150 |
| 116 | Օրդուբադ | Վերին-Ագուլիսի | 300 | 45 | 345 |
| 117 | Մեսրոպաւան | » | 200 | 50 | 250 |
| 118 | Ալահի | » | 250 | 37-50 | 287-50 |
| 119 | Քարվանսարա | Քարվանսարայի | 300 | 45 | 345 |
| 120 | Սոփ | » | 200 | 50 | 250 |
| 121 | Վերին-Աղդան | » | 250 | 37-50 | 287-50 |
| 122 | Աղաջուր | » | 100 | 50 | 150 |
| 123 | Գոշավանք | » | 200 | 50 | 250 |
| 124 | Թալա | » | 100 | 50 | 150 |
| 125 | Ուզունթալա | » | 100 | 50 | 150 |
| 126 | Սև Քար | » | 200 | 50 | 250 |
| 127 | Սաչխերէթ | Քութայիսի | 200 | 50 | 250 |
| 128 | Օնի | » | 300 | 45 | 345 |
| 129 | Բաղա | Շամշադինի | 200 | — | 200 |
| | | | 30950 | 6023-50 | 36973-50 |

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԱՀԱՆԳԱՊԵՏԸ ՄՈՒԼԱՅԻ ԴԵՐՈՒՄ

*Մոսկուայի «Սող» թերթի հաղորդածի համաձայն, Նամանկայում (Թուրքեստանում) հետևեալ դէպքն է տեղի ունեցել. Նամանգանի նահանգապետ Կիպպիւսը հագնելով Նամանգանի աղգաբնակչութիւնը թիւրք մզկիթում, ներկայանում է հասա պաշտաման հագած, չալման գլխին և գաւազանը ձեռքին։ Կիպպիւսը մըզկիթում կարդում է Ղուրանից մի քանի տանաւոր (նա 14 տարի ապրել է Թիւրքիայում և շատ լաւ գիտէ արաբերէն) և բացատրում հասարակութեան։*

*Սոյն տները խօսում են իշխանութեանը հնազանդութեան և իւրաքանչիւր մուսուլմանի կեանքը հայրենիքի սիրուն զոհաբերելու պարտականութեան մասին։ Կիպպիւսը ճառ արտասանեց, որով հրաւիրում էր ժողովուրդին պատերազմի ծառայութեան։*

*Նրա ճառը մեծ տպաւորութիւն է թողնում ներկաների վրայ։ Մօտ երեք հարիւր տղամարդ, ի շարս որոց նաև մի քանի ծերունի, կամովին ցանկութիւն յայտնեցին պատերազմ գնալու։*

## ԳԱՒԱՌ

*ՍՈՒԼՏԱ (Ախալքալաքի գաւառ), 8 օգոստոսի.—Կիսլովոդսկից Մարա Մելիքեան արձագանգ տալով «Հորիզոն»-ի կոչին, իր հարազատների շրջանում ժողովել է գերուած հայեր ազատելու համար 8,000 ռուբլի. Նուիրատուների մեծ մասը հայ կանայք են։ Վերոյիշեալ նամակը իւր 8,000 ռ. նուէրով շատ մեծ հետաքրքրութեամբ կարդացուեց մեզանում. շատերի բերանից լըսւում էր «կեցցեն այդպիսի հայ խանումները (տիկնայք). Թող Աստուած այդպիսիներից շատ տայ»... Ջաւախքի գիւղացութիւնը, որ իր վերջին պատառը չխնայեց իր թշուառ գաղթական եղբօրը և խորութիւն չդնելով օգնեց և ասորուն և յոյնին, այսօր կարդալով Մուրադների, Սեպուհների աղէկտուր, սրտաճմլիկ կոչերն ու նամակները, չի խնայիլ օգնելու Դերսիմ և այլուր գերուած հայերի ազատութեանը իւր լուման։ Սուլտայում այդ մասին ժողով կայացաւ և շուտով սկսւում է հանգանակութիւնը։*

*Նոր զօրահաւաքի պատճառով չտեսնուած կերպով սկսեցին հունձը և գարեքաղն աւարտեցին, շուտով վերջացնում են ցորենի քաղը։ Այս տարի Ջաւախքում հացը միջակ է. բայց հացահատիկը ընտիր տեսակից է։ Մի քանի գիւղերի արտերը կարկուտն ամբողջապէս փչացրել էր (Ղուլալիս, Մամզարա, Ջըրաշէն, Հեշտիա գիւղերում)։ Գովելի է Ջաւախքի հայ կնոջ աշխատանքի եռանդը. այժմ, երբ կարիքը ստիպեց, նա դուրս եկաւ դաշտ և սկսեց ազատ կերպով փայլեցնել աջ ու ձախ գերանդին։*

*Մեղուապահները իրանց մեղուներից այս տարի շատ են տրտնջում, որ մեղր չեն դրել։ Վերջին տարիներս մեր Ջաւախքի գիւղացիներից մի քանիսը՝ Սուլտացի ապայ Գ. Ֆարմանեանը, Տատէշցի Մ. Մովսիսեանը, Դիլիսկեցի ուսուցիչ Թ. Նահապետեանը, Կարզախցի Բ. Միքայէլեանը, Բողնցի վրացի Ղարաբօզը, իրանց Դադանի նոր ձևի մեղուաբուծութեամբ գեղեցիկ օրինակ տուին Ջաւախքի գիւղացիներին։*

*Արսէն քահ. Բլըցեան*

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### ՄԻ ՀԱՅ—ՄԻ ՈՍԿԻ

*Նոր-Նախիջևան, 3 օգոստոսի*

*Կիսլաւոդսկում պատիւ ունեցայ դիմելու՝ ընկերութեամբ պ. Տէր-Մարգարեանի՝ բժշկուելու եկած հայ հարուստներին, պարզելով հայ գերիների անել վիճակը և կարիքը իսկոյն օգնելու նրանց ու ազատելու քիւրդերի ձեռքերից։ Դ. Բ. Աւան-Իզբաշեան խան Սագնակսկին խոստացաւ Թիֆլիսում տալ այդ գործին 10,000 ռ., Յ. Ս. Աւետեանը գրուեց 5000 ռ., Կ. Ս. Աջէմեանը, Մ. Գ. Ալիբէգեանը, Պատուական Ծատուրեան գրուեցին 3000-ական ռ., Պ. Օ. Ղուկասեան 2500 ռ., Մ. Քալանթարեան, Ն. Ժամհարեան 2000-ական ռ., Գրիգոր Զալխուշեան, Եղբ. Մայիլեաններ և Կէնջօղլեան-Շապոշնիկեան 1500-ական ռ., Տէր-Դաւթեան, Ս. Առաֆելեան, Բ. Արզմանեան, Գ. Տէր-Մարգարեան, Ա. Կրասիլնիկեան 1000-ական ռ., Բ. Մելիքեան, Բէգլարեան, Ս. Մալխասեան 500-ական ռ., Ս. Շահնազարեան 400 ռ., Ս. Արուշեան, Ն. Թումաև, Փ. Վարդազարեան, Խ. Ամիրջանեան 300-ական ռ., Ն. Պետրոսեան 100 ռ.*

*Երկու օրուայ մէջ ժողովուեց 34,000 ռ., իսկ պ. Աւան-Իզբաշեանի խոստացածի հետ՝ 44,000 ռ., չհաշուելով այն 8000 ռ., որը հաւաքեց պ. Մելիքեանը։*

*Գտնուեց մի մարդ միայն, որ ոչինչ չտուեց։ Դա միլիոնատէր Ն. Մ. Ա-մն էր։*

*(«Մշակ» № 175)* *Գր. Զալխուշեան*

* * *

*Հայկ. կենդր. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացել է Կ. Մ. Ալիխանեանից 500 ռ. յօգուտ քրդերի մօտ գերի մնացած հայերի ազատագրման գործին։*

### ՎՐԱՑՈՒՀՈՒ ԽՈՇՈՐ ԿՏԱԿ

*Կիսլաւոդսկուց Թիֆլիս գալիս, Մլէթ կայարանում վախճանուած տիկ. Ե. Ի. Սարաջևը թողել է հետևեալ խոշոր կտակը՝ 200,000 ռուբլի Թիֆլիսի քաղաքային ինքնավարութեանը՝ վիրաբուժական հիւանդանոց բանալու համար, 150,000 ռ. Քութայիսի քաղաք. ինքնավարութեան՝ քաղաքային թատրոն շինելու և կահաւորելու, 100,000 ռ. Թիֆլիսի վրաց դրամատիկ ընկ., 100,000 ռ. վրաց մէջ գրագիտ. տարածող ընկ. դպրոցներ հիմնելու և վրացերէն դասագրքեր տարածելու համար, 50,000 ռ. Թիֆլիսում հիմնուելիք բազմարուեստեան դպրոցին (պոլիտեխնիկումին) կից անդամահատական կամ ֆիզիքական աշխատանոց հիմնելու համար, 50,000 ռ. վրաց կուլտուրական «Գանաթլէբա» ընկ.՝ աղջկանց արհեստագիտական դպրոց բանալու, 30,000 ռ. Վրա-*

դիկավկազի քաղ. ինքնավարութեան՝ չքաւոր աշակերտ-աշակերտուհիների ուսման վարձ տալու՝ առանց ազգութեան խտրութեան, 25,000 ռ. Քութայիսի վրաց գրամատիկ. ընկերութեան, 20,000. վրաց պատմ. և հնագիտ. ընկերութեան, 20,000 վրաց գրակ. ընկեր՝. գեղարուեստական ինքնուրոյն լաւագոյն հեղինակութեանց հրատարակութեան համար, 10,000-ական ռ. կովկ. հողագ. արհեստագիտ. գաղութի ընկ., Վլադիկաւկազի վրաց դպրոցին, Մոսկուայի վրաց ընկերութեան և Դիդուբէի ուղղափառների եկեղեցուն և ուրիշ գումարներ յատկացուած վրաց դպրոցներին, եկեղեցիներին, վանքերին և այլ նման հաստատութեանց սկսած 100,000 ռուբլուց, մինչև 500 ռ. և մի 500 ռ. էլ Հայոց Ս. Ստեփաննոս (Հայոց կուսանոցի) եկեղեցուն։ Հայ հարուստ տիկիններ երանի թէ բարի օրինակ առնէին իրենց այս բարերարուհի հարևանից։

* * *

Ախալքալաքի աւագ ուսուցիչ Յար. քահ. Միրիմանեանը իւր շնորհակալութիւնն է յայտնում այն օրիորդներին և երիտասարդներին, որոնք աջակցել են յօգուտ Ախալքալաք գիւղի Հայոց դպրոցի յուլիսի 31-ին տրուած ներկայացման, որից գոյացել է 73 ռուբլի. այլև հետևեալ նուիրատուներին քսելեսի փոխարէն. Սար. Գոզալեան և Կոստ. Ումիկեան 10-ական ռուբլի, Ար. Գալստեան 20 ռ., Աղէք. Դանդուրեան մի չքաւոր աշակ. թոշակ 4 ռ., ուսան. Գ. Արծրունին նկարչութեան տետրներ և այլ պիտոյքներ 15 ռ.։

* * *

Պետրոգրադից եղբարք Արշաւիր և Յարութիւն Սահաթչեանները նուիրել են յօգուտ՝ ա) Միջագետքի հայ կարօտեալների 100 ռ., բ) Հայաստանի վերաշինութեան 100 ռ., գ) Հայ գերիները քիւրդերից ազատելու 100 ռ., դ) Նպաստամատոյց Ընկերութեան 100 ռ., ե) Թիֆլիսի Հոգաբարձ. և Քահանաների Որբանոցին 100 ռ., ընդամենը 500 ռուբլի։

## Քրոնիկոն

Մինչև այժմ թիւրքահպատակներին և պարսկահպատակներին թոյլատրւում էր ծառայել Թիֆլիսի ելէքտրաքարշի վրայ, և կան նոյնիսկ երկար տարիներ ծառայողներ։ Այժմ, ինչպէս լսում ենք, թիւրքահպատակներին և պարսկահպատակներին չեն ընդունում ծառայութեան։ Մեզ անհասկանալի է բոլորովին, թէ ինչու առաջ, երբ ծառայողների թիւը համեմատաբար շատ էր, ընդունւում էին այդպիսիք, իսկ հիմա երբ շատ ռուսահպատակներին զինուոր են տարել, չեն ընդունում։ Յայտնի է, որ թիւրքահպատակներն ու պարսկահպատակները ուրիշ ներքին ձեռնարկութիւնների մէջ վարում են շատ պաշտօններ։ Պէտք է նկատի ունենալ նաև այն հանգամանքը, որ նրանց մէջ կան նաև ռուսերէն գիտցողներ։ Ուրեմն այդ որոշումը սխալ է և արժանի վերացնելու։

* * *

Կովկասի պարենաւորման գործի լիազօր Շաշկովսկու անունով ստացուեց 11 վագոն շաքարաւազ քաղաքի ազգաբնակութեան կարիքների համար։

* * *

Կայսերական Կովկ. Գիւղատնտեսական Ընկ. խնդրանքով Բորչալուի գաւառի կալուածատէրերից մէկը Ընկ. պահեստին է յանձնել 300 պութ լաւ տեսակի գետնախնձոր բացառապէս քաղաքի ազգաբնակութեան ծախելու սակագնով, այն է՝ պութը 2 ռուբլով։

* * *

Քաղաքային Վարչութիւնը լսելով Թիֆլիսում անդամահատական հիւանդանոց և բազմարուեստեան դպրոցին (պոլիտեխնիկումին) կից ֆիզիքական աշխատանոց հիմնելու համար 250,000 ռ. կտակող տիկ. Ե. Ի. Սարաջևի մահուան մասին, որոշեց վերոյիշեալ հիմնարկութիւնները անուանել Ե. Ի. Սարաջևայի անունով, հանգուցեալի վրայ պսակ դնել քաղաքային ինքնավարութեան անունից և ամբողջ վարչութեան կազմով ներկայ լինել թաղմանը և բազմարուեստեան դպրոցում հանգուցեալի անունով թոշակ հիմնել։

* * *

Միս չը գործածելու օրերի մասին հրատարակուած օրէնքը Թիֆլիսում գործադրութեան է մտնում օգոստոսի 12-ից։

* * *

Զինուորացուներին ժամանակամիջոց տուող քաղ. յանձնաժողովը ժամանակամիջոց տուեց Եարալեանի գործարանի 40 բանուոր զինուորացուներից 36-ին, քաղ. արհեստաւորաց դպրոցից 6-ից—5-ին, «Տրէուգոլնիկ» ֆիրմայի 8 ծառայողի, «Кіевская Мысль» թերթի 1 թղթակցին, «Մշակի» 1 աշխատակցին և Ադամեանի տպարանի 2 գրաշարի։ Յանձնաժողովը մերժեց ժամանակամիջոց տալ բանկերում և միւս վարկային ու խնայողական հիմնարկութիւններում ծառայողներին։

* * *

Անցած յուլիսի 5-ին քաղաքում տեղի ունեցած անկարգութիւնների պատճառով քաղաքում շարունակւում են խուզարկութիւնները։ Ձերբակալուած են մի քանի կանայք, որոնց մօտ գտնուել են մեծ քանակութեամբ կողոպտուած ապրանքներ։

* * *

Քաղաքային խորհրդարանը որոշեց խոլերայի դէմ կռուելու համար յատկացնել 10,000 ռ.։

* * *

Ուսուցչապետ Սապոժնիկովը, որ գիտական հետազօտութիւններ կատարելու համար գնացել էր Տաճկահայաստան, վերադարձաւ Թիֆլիս։

* * *

Քաղաքային առողջապահական բիւրոյի տուած տեղեկութիւնից երևում է, որ օգոստոսի 10-ին քաղաքային բարաքներում հիւանդներ եղել են խոլերայով—21, խոլերայով կասկածելի—5, մեռել է—1, իսկ ամսիս 9-ին նոյն բարաքներում հիւանդներ եղել են՝ քութէշով—29, դիֆտերիտով—8, ծաղկով—6, բծաւոր տիֆով—25, որովայնային տիֆով—50, կրկնուող տիֆով—116, թանչով (դեզինտերիայով)—11 և խառն—1։

* * *

Կովկասի ուսումն. շրջանի հոգաբարձու Ռուդոլֆը ժողովրդական լուսաւորութեան նախարարից ստացել է հեռագիր, որով յայտնւում է, որ Թիֆլիսի կանանց բարձր դասընթացքին կից բժշկական ճիւղ (ֆակուլտէտ) բանալու գործը ոչ մի արգելքի չի հանդիպում։

* * *

Քաղաքային կենտրոնական հիւանդանոցին կից (Պուշկինսկայա փող.) երեկուանից բացուեց հակախոլերային պատուաստումներ կատարելու բաժանմունք. պատուաստումը կատարուելու է ձրի՝ ցերեկուայ ժամը 2—4-ը, ուսուցչապետ Բարիկի խմբի բժիշկների ձեռքով։

## Արտաքին տեսութիւն

### Ի՞ՆՉ Է ԱՆՈՒՄ ԱՆԳԼԻԱՆ

Ռուս աջակողմեան տարրերի գերմանասիրութիւնը այս երկու տարուայ ընթաքում շատ անգամ է վեր հանուել Պետական Դումայում և մամուլի մէջ։ Թունաւորուած մերձբալթեան բ ա ր ո ն

## ԱՒՍՏՐՈՒՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ԱՊԱԳԱՆ

Աւստրիական ռազմական ոյժերը—գրում է «La Nation Tchéque», այժմ հասնում են 2.700,000 զինուորի։ Հաբսբուրգեան միապետութիւնը արդէն կորցրել է վիրաւոր, գերի և սպանուած ոչ պակաս, քան 4 միլ. մարդ։ Այդ թուերը մենք վերցնում ենք ստոյգ աղբիւրներից։ Աւստրուհունգարիան կարելի է բաժանել ազգային հինգ հատուածի։ Բայց այս 5 հատուածներից պատերազմի պատասխանատուութիւնը ընկնում է միայն երկու հատուածների, այն է՝ գերմանական և մաջարական (հունգարական) հատուածների վրայ։

Պատերազմից յետոյ պիտի վճռականապէս անդամահատուի Աւստրիան, որի 3 սլաւոնական հատուածներից Լեհաստանը կը ստանայ այն ինքնավարութիւնը, որ արդէն երկու տարուց ի վեր խոստացուած է։ Հարաւային սլաւոնական ճիւղը կը տրուի իբրև հատուցում Սերբիային և Իտալիային։

Իսկ ինչ վերաբերում է հիւսիսային սլաւոնական ճիւղին, որ բաղկացած է չեխերից և սլաւոններից, պիտի կազմի անկախ ազգութիւն՝ ամուր կապերով կապուած դաշնակից պետութեանց հետ։

Պրագան պիտի հանդիսանայ որպէս հակակշիռ Բերլինին և Վիէննային. Աւստրուհունգարիան պիտի դադարի գոյութիւն ունենալուց, որպէս զի ապագայում իբրև զէնք չը ծառայի Գերմանիային։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

Բ

## ԻՏԱԼԱՑՈՑ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

Ներկայ 1916 թուականի գարնանից Իտալիոյ մամուլի շատ հանդէսներում լոյս տեսան Հայաստանի և հայութեան հարցին նուիրուած յօդուածներ։

Ես գրաւուած նոցա այժմէութեան շահեկանութիւնից քաղուածաբար տալիս եմ հայ ընթերցողներին մի քանիսի թարգմանութիւնները։

—

Մեծանուն աշխարհագրագէտ ուսուցչապետ Առքանճէլօ Կիգլերի «Էմպորիում» հանդէսի մէջ խօսելով Հայաստանի աշխարհագրութեան և հայ ազգի պատմութեան գլխաւոր ժամանակաշրջանների մասին իւր ընդարձակ յօդուածն սկսում է այսպէս.

«Ժամանակակից Եւրոպայի ոչ մի ժողովուրդ կարող է պարծենալ իւր ծագման այնպիսի հնութեամբ և պատմական աւանդութիւններովը, ինչպէս հայ ազգը։»

Այս յոյժ շահեկան յօդուածը զարդարուած է Հայաստանի մի քարտէզով և սքանչելի պատկերներով։

—

Հռոմում լոյս տեսնող «Բիլիքնիս» հանդէսի մարտ 31 թուահամարում երգուել հաւատարմատար Ճիովաննի Մէյիլլէ հայերիս նուիրած իւր մի յօդուածում հետաքրքրական բաներ է ասում իւր ընթերցողներին հայոց հարցի և 1895—1897 թուականներին, ինչպէս և վերջերումս տեղի ունեցած հայ կոտորածների մասին։

Կուռ ոճով գրուած այդ յօդուածին մի յառաջաբան է տուել ուսուցչապետ Գոռռատօ Գոռատինօն։ Յօդուածին կցուած է նաև Հայաստանի քարտէզը և ուսուցչապետ Թումանեանի խորհրդանշանական մի պատկերը. հուսկ ապա նաև մի սքանչելի փորագրութիւն Վանի և շրջակայքի փախստական որբերի։

Բայց այս յօդուածներից ամենից շատ աչքի ընկնողները լոյս տեսան օրագրութեան մէջ։

Գոմմէնդատոր Վիգօ Մանտէկացցան Corriere della Sera ամենատարածուած մեծ օրաթերթում գրում է.

«Մինչդեռ Մեծ Իշխան Ն. Նիկոլայևիչի բանակները յաղթական թափով առաջանում են դէպի հարաւ և ուրիշ բանակներ տիրում են Տրապիզոնին, ձգտելով լիովին ազատել հայ հողը թրքի լուծից, ի սփիւռս աշխարհի ցրուած բոլոր հայերը սրտատրոփ և յուսալի վիճում են իրենց դժբաղդ հայրենիքի ապագայ վիճակի մասին։ Թէ ինչ է եղել այդ հայրենիքի ամենատխուր վիճակը յընթացս երկար դարերի և մանաւորապէս վերջին տարիներս—յայտնի է ամենուն։ Թուականական կարգով հաշուելով, վերջին կոտորածը Էրզրումինն է, որի հայ ազգաբնակչութիւնը, երբ ռուսները գրաւեցին այն, իսպառ բնաջնջուած էր։

Բոլոր հայ գաղութներից դիմումներ եղան ամեն երկիրների կառավարութիւններին և մամուլին, որպէսզի Հայոց հարցը իւր ժամանակին չմոռացուի և իւր լուծումը գտնէ։

Կասկած չկայ որ հայերի խնդիրքը և պահանջքը բարեհաճ քննութեան պիտի առնուի ոչ միայն այն պատճառաւ, որ ներկայ պատերազմը ազատագրման և իրաւագուրկների պաշտպանութեան համար է մղւում, այլ որովհետև չէ կարելի ազնիւ մի ժողովուրդի օրինական ձգտումներն անուշադիր թողնել, ինչպէս և այն պատճառաւ, որ հայերը (արևմուտքի երկիրներում այդ բոլորեքեանք չը գիտեն) իրենց արիւնովը սատարեցին ռուսաց զէնքի աջողութեան։

Աւելի քան հարիւր հազար հայ մարտիկներ կան ռուս բանակերի շարքերում։

Բացի այդ՝ հարիւրաւոր հայեր կան ֆրանսական զօրքի «Օտարական լէգէոն»-ների մէջ։ Ապա մեզ մօտ, Իտալիայում, չը նայած որ հայ գաղութը այնպէս բազմաթիւ չէ, այնուամենայնիւ հայերը խնդրեցին մտնել մեր բանակի շարքերը, բայց ինչ-ինչ նկատառումներով կարելի չեղաւ ընդունել նոցա խնդիրքը։

—

Ռուսաց հետ կողք կողքի պատերազմ մղում են քսան հազար հայ կամաւորներ, որոնց հոգին և զինուորումը եղել է Եւրոպայի զանազան մայրաքաղաքներում նստած յանձնաժողովների առատ նուիրաբերութիւններով։*)

Եւ չնայած որ ի սկզբան ոմանք հայերից յեղափոխական գործելակերպն էին գտնում իմաստուն և այլ ոմանք ուրիշ ճանապարհներն աւելի նպատակայարմար, վերջին՝ վճռական րոպէին՝ բոլորն էլ համաձայնեցան հայրենիքի փրկութեան առջև։**)

—

Հայ ազգի վաճառականական ընդունակութիւնը պատճառ եղաւ, որ շատեր թողին իրենց ծննդավայրը, նուիրուեցին առևտուրի և այդու տէր են երբեմն պատկառելի հարստութեանց։ Պարիզում, Մարսէյլում, Անգլիայում, Ամերիկայում կան միլիոնատէր հայեր. և չնայած հայրենիքից հեռու՝ շատեր նոյնիսկ այդ հեռաստաններում ծնուած, ամենն էլ միշտ իրենց սուրբ պարտքն համարեցին մեծ գումարներ զոհաբերել իրենց հայրենակիցների տանջանքները թեթևացնելու համար, ինչպէս և Հայաստանում հալածանքի երեսից պանդխտած ազգակիցների վիճակը բարուոքելու։ Այլապէս կարելի չէր բացատրել բարեգործական և նպաստամատոյց կազմակերպութիւնների եռանդը, որոնք հասցնում են իրենց օգնութիւնը ոչ թէ մի քանի հարիւր՝ այլ հազարներով տարագրուած դժբաղդների, ամուսինը կորցրած կանանց և անտէր որբերի վիճակը ամոքելու համար։

Հայ որբանոցներում այսօր պատսպարուած ծնողակորոյս երեխաներից շատերը չգիտեն թէ ում զաւակն են, չգիտեն իրենց

---

*) Յօդուածագիրը սխալւում է. ի սփիւռս աշխարհի բնակուած բոլոր հայերը առանց սեռի և դասակարգի, նոյնիսկ դաւանանքի խտրութեան նուիրեցին և նուիրում են իրենց լուման, մանաւանդ ստորին խաւերից։

**) Աւաղ, այս էլ ուղիղ չէ։ Ա. Ձ.

ազգանունը։ Այդ դժբախտները ամենքն էլ խնամւում և դաստիարակւում են «Ազգի հաշւով», ինչպէս իրենք՝ հայերն ասում են հպարտութեան արդարացի մի զգացումով։ *)

Յարգելի հրապարակախօսը այստեղ համառօտակի յիշելով մեր ազգային աղէտի այլ օրերում առաջ եկած կազմակերպութիւնները, որոնցից մին իւր վրայ է վերցրել պատերազմի գնացող հայ զինւորների որդկերանց խնամակալութիւնը, խօսքը բերում է Պօղոս Նուպարի վրայ, որը Պարիզում ունի բարձր հասարակական և միանգամայն բոլորովին ուրոյն, օտարոտի—եթէ կարելի է այսպէս ասել—դիւանագիտական դիրք։ Պօղոս Նուպարը մի դեռ ևս գոյութիւն չ՚ունեցող պետութեան դեսպանն է, դեսպան՝ որ իւր հաւատարմաթղթերը ունի և Քառեակ համաձայնութեան կառավարութիւնների մօտ Կաթողիկոսի (իմա հայոց ազգի պապ) պատուիրակն է, որին վերաբերւում են լիակատար պատկառանօք և որոնք վերջիվերջոյ ճանաչում են նրան որպէս հայ ժողովուրդի օրինաւոր ներկայացուցիչը Ֆրանսիայում, դեռ աւելի առաջ են գնում։ Այնտեղ հայերի ազգութիւնը որոշող մի անուղղակի բանաձև են գտել, որով Ֆրանսիան այլ ևս չի ընդունում, որ հայերը կարող են թրքահպատակներ լինել։

Հայոց հովիւ քահանան բաւ է որ մի վկայականով հաստատէ գիտուք Արշակին կամ Արմենակին հայ լինելը, պրծաւ, ֆրանսական կառավարութիւնը նայում է նրանց վրայ որպէս մի պետութեան քաղաքացիների։

Յօդուածագիրը ապա ծանօթացնում է իւր ընթերցողներին Պօղոս Նուպարի անձնաւորութիւնը՝ տալով նրա համառօտ կենսագրականը նորա հօր և իւր հասարակական դիրքը և գործունէութիւնը Եգիպտոսում։

Պօղոս Նուպարը մասնագէտ գիւղատնտես է։ Երկրագործութիւնն է եղել նորա մեծ հարստութեան աղբիւրը. բամբակի մի առանձնապէս յարգի տեսակի առաջին մշակողը լինելով իպատիւ իւր ձեռնարկու ոգոյն այդ տեսակ բամբակը Նուպարեյէ անունով յայտնի է։ Կահիրէի մօտ անապատում նոր կառուցւող շքեղ մի քաղաքի (Հէլիոպոլիս) հիմնադիրներից մին է, ապա «credit foncier» բանկի վերատեսուչներից մինը, ուստի և ունի լայն կապեր և բարեկամութիւն ֆինանսների աշխարհքում, ինչպէս և քաղաքական և մասնաւորապէս դիւանագիտական շրջաններում։ Ասում են նաև—չգիտենք որքան ուղիղ է—իբր այնքան ընդարձակ յարաբերութիւնների դուռը բացած է նրա համար իւր Պելճիքայի Թագաւորական տան մի իշխանուհու հետ ամուսնացած լինելը։

Այսպէս Պօղոս Նուպարը իւր հայրենիքին ծառայել կարենալու համար գերազանց պայմաններում է գտնւում։ «Ազգը», որ կուրօրէն հաւատում է իւր գործին և որ երբեմն նրա վրայ նայում է ինչպէս մի Սփինքսի, բայց ճշմարիտ որ Պօղոս Նուպարն մի անձնաւորութիւն է, որուն համար հասարակօրէն կասեն rappresentativa (ազգը ներկայացնելու յարմար անձ)։ Նա շատ սակաւախօս է իւր արածի մասին և վերին աստիճանի վերապահ։

Աննշանական չէ որ Պօղոս Նուպարը մօտերքս եկաւ այցի գայ Իտալիա, ճիշտ ինչպէս նա այցելեց միւս մայրաքաղաքները։ Այդ դէպքում չզարմանանք, եթէ մամուլը իւր արծուեան աչքերով ընկատի ոչինչ և նրա Իտալիայից մեկնելուց յետոյ միայն իմացաւ որ նա արդէն Պարիզ է վերադարձել։

«Corriere della Sera». Թրգ. Ա. Ձէթվաճեան

*) Պէտք է չմոռանալ ռուս պետութեան ամենախոշոր նպաստը, այնուհետև Անգլիացոց և Հիւսիսային-Ամերիկացոց, որոնց նպաստների մէջ պակաս չէին և այնտեղի հայերի։

Ծանօթ. Խմբագր.

## ԹՐՔԱԿԱՆ «ՍՊԻՏԱԿ» ԳՐՔԻ ԱՌԹԻՒ

«Համբաւաբերի» 29-րդ համարում Թրքական «Սպիտակ» գրքից հատուածներ կային, որոնցից մէկով Ադանայի կոտորածի մեղքը ձգւում էր հայերի վրայ։ Իրանց բարբարոսութեամբ Սուլթան Համիդին փնտռել տուող սրիկաների վոհմակ Թալէաթներն ու Էնվերները, գոնէ այնքան կարճամիտ ստախօս չլինէին և իրանց ձեռքով ստորագրածը չուրանային։

Հիւսէին Հիլմիի կաբինետը իր ժամանակին առանձին յայտարարութեամբ, պաշտօնապէս հայերի անմեղ զոհ լինելը հաստատեց, իսկ նոյն Էնվերը ահա թէ ինչ կոչ հրատարակեց այդ առթիւ.

«Հայրենակիցներ. ժանտաժուտ հին վարչութեան (զալըմ էսկի իտարէնըն) վ ե ր ջ ի ն զ ո հ ե ր ո ւ ն*), գլխիկոր մնացած որբերուն, արտասուն, անտէրունջ մնացած մայրերուն, եղբայրներուն օգնութեան հասնինք։ Ահա այսօր մեր անոնց ցուցնելիք ժպտուն դէմքերը գուցէ անոնց անօթութիւնը քիչ մը մոռցնել տան, զանոնք ապրեցնեն և հայրենիքին այսպէս յանկարծակի և ակնյայտնի կորուսած բիւրաւոր քաջարի կտրիճներէն զուրկ մնալը չիմացնեն։ Այս կերպով Աստուծոյ հաճութիւնը վաստկած, վիրաւոր հայրենիքնիս զոհացուցած, թէ ինչ ըսել է եղբայրութիւն, օսմանցիութիւն—ամենուն հասկցուցած կըլլանք»։

«Հայրենակից եղբայրներ. այս յ ա ն ց ա ն ք ը մեզի դաս ու խրատ ըլլայ, այլեւս հոգւով ու գլխով մէկզմէկու փարինք, ձեռքձեռքի աշխատինք և մէյմալ այսպիսի դառ օրեր չտեսնենք»։

Էնվեր

Այս կոչը տպագրուած է «Գեղունիի» 1909 № 6-ում, Էնվերի թրքերէն ձեռագրի բնագրով։

Այդ նոյն Էնվերն էր, որ 1915 փետրուարին Սարիղամիշի պարտութիւնից յետոյ մէկ կողմից հայ տարրը բնաջինջ անելու ծրագիրը որոճում էր, Երզրումից Պոլիս վերադարձին Գոնիայի, Անգիւրիայի և այլն հայ Առաջնորդներին թիւրքահայ զինւորների քաջութեան ներբողը անում էր բերանացի և գրաւոր։

Իրաւ որ նենգամտութեան և խարդախութեան մէջ նմանը չունին թիւրք գործիչները։

28 յուլիսի 1916 Արլօ

*) Ընդգծումները իմն են։

## ՉԱՐԻՔԸ ՎԵՐՋ ՉՈՒՆԻ

Տաճկահայերի նորանուաճ առանց այն էլ քարուքանդ եղած երկրում կիսաւեր հայ տները կործանւում են ոստիկանութեան աչքի առաջ և նոյն իսկ գերութիւնից իւր հարազատ քրոջն ազատողը բանտարկւում է սքանչելի պատճառաբանութեամբ և հազիւ ուրեմն արձակւում է ուրիշների միջնորդութեամբ և այլն և այլն։

Մենք դժուարանում ենք հաւատալու այն, ինչ որ հաղորդում է «Հորիզոն»ի № 175-ում Հայկ Ադայեանը, Կարնի հիւանդանոցի լիազօրը, և արտատպելով իւր նամակը բոլոր պատասխանատւութիւնը թողնում ենք պարոնի վրայ։

«Էրզրումի և թէ շրջակայ գիւղերի թիւրքերը բոլորը ազատ ներս ու դուրս են անում քաղաքի պարիսպների դռներով, իսկ հայ մարդկանցից պահանջւում են մի որևէ վկայական, որ թոյլ տան այդ դռներով անցնելու։

«Ես որպէս տեղիս հիւանդանոցի լիազօր՝ ձին հեծած ման եմ գալի հայ գիւղերը որոնելու որբեր և հիւանդներ, որոնց տեղա-

փոխում եմ Մոսկուայի Հայկական Կոմիտէի Էրզրումում բացած հիւանդանոցը և որբանոցը։ Շատ գիւղերում բոլորովին ոչ ոք չկայ բառիս բուն նշանակութեամբ. գիւղերն աւերակ են, եղածն էլ քանդում են. տների հաստ գերանները սղոցում, տախտակ են պատրաստում. ես աչքովս եմ տեսել քանդելիս։

«Էրզրումի Թիւրքերը սայլերով դարձեալ կրում են հայ գիւղերից իրենց համար ձմռան այրելու աթար և փայտեր, դռներ, պատուհանի փեղկեր, երկաթներ, վերջապէս ինչ որ ճարում է։

«Հայերի արտերը հասել են, բայց Թոյլ չի տրւում ձմռան պաշարը հոգալու։ Թիւրքերը շարունակ շուկայում խոտ են ծախում սայլը 25 ռուբլով. այդ հայերի խոտն է։

«Այս քանի օրս մի հայ աղջիկ, 18 տարեկան, հանել էին Թիւրք Հասան Ալու տանից. գտնողները աղջկայ եղբայրն ու հօրեղբօր տղան էին, որոնք գաղտնի կերպով փնտրել էին նրան և գտել։ Ոստիկանութիւնը այդ տղերանց 2-ին էլ բանտարկեց, իսկ Թիւրքը մի օր բանտ նստելուց յետոյ արձակուեց։ Երկու հայ տղաներն արձակուեցին մի հայ սպայի միջամտութեամբ։ Ոստիկանութեան առարկութիւնն այս էր. «Եթէ հայ աղջիկը իր կամքով չգնար, երբէք Թիւրքը բռնութեամբ չէր տանիլ»։ Ազատուած աղջիկը (անունը Սուլթան) ասում է, որ ուրիշներն ևս կան Թիւրքերի ձեռքին, որոնց տների տեղը չգիտէ, բայց Թիւրքերի անունները գիտէ»։

Հայկ Աղայեան

## ՏԱՃԿԱՀԱՅՈՑ ՎԱՐՉԱԿԱՆ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ

«Кавк. Сл.» Թերթի Պետրոգրադի Թղթակիցը հաղորդում է հետևեալը.

Բուխարեստից ստացուած լուրերի համաձայն՝ Կ. Պոլսից հաղորդում են, որ երիտ.-Թիւրքերի կառավարութեան ճնշման տակ՝ Թիւրքիայի հայոց եկեղեցու վարչական կազմակերպութիւնը նշանաւոր փոփոխութիւններ է կրել։ Ըստ որում եկեղեցու նոր կազմը հաստատուած է սուլթանի իրադէով։ Այդ օրէնքի համաձայն՝ Թիւրքիայի հայոց եկեղեցին պէտք է խզէ իր բոլոր յարաբերութիւնները, որ պահում էր Էջմիածնի Ամենայն Հայոց Կաթողիկոսի հետ։ Վերացւում է նաև Թիւրքահայոց ազգային ժողովը։ Հայոց Կաթողիկոսի աթոռանիստը կը լինի Երուսաղեմի ս. Յակոբի վանքը։ Կ. Պոլսի հայոց պատրիարքութիւնը վերանում է։ Այդ պատրիարքութիւնը յետագայում նկատուելու է կաթողիկոսութեան փոխանորդութիւն, որի հոգևոր կոչումը եպիսկոպոսական աստիճանից ցած չը պիտի լինի։

Երուսաղէմը առաջիկայում կը լինի հայ-լուսաւորչականների կրօնական կենտրոն։

Թիւրքիոյ դաւանութեանց նախարարը իրաւունք ունի փոխել կաթողիկոսին և հայ եպիսկոպոսներին։ Բոլոր Թիւրք լրագրերը ողջունում են այդ ապօրինի գործը, որով կառավարութիւնը գրչի մի հարուածով ջնջեց պատրիարքական դարաւոր առանձնաշնորհումները։

Այդ առթիւ «Թանինը» գրում է. «Այսպիսով վերջ տրուեց արտասահմանի պետութիւնների—առանձնապէս Ռուսաստանի—հայ ժողովրդի վրայ ունեցած անուղղակի ազդեցութեան»։ Թերթը աւելացնում է, որ 1864 Թուականին հայերին տրուած այդ առանձնաշնորհումները ցոյց էին տալիս այն մեծ վստահութիւնը, որ օսմ. կառավարութիւնը տածում էր դէպի հայ ժողովրդի օրինապահութիւնը։ Այժմ այդ վստահութիւնն այլ ևս չկայ։

## ԹԻՒՐՔ ԳԱԶԱՆՈՒԹԵԱՆՑ ՆՈՐ ՎԱՒԵՐԱԳԻՐ

Կոպենհագենից հեռագրում են «Рус. Вѣд.»-ին.

«Berner Tagwacht» լրագիրը հրատարակել է յայտնի գիտնական Աւգուստ Ֆորէլի նամակը։ Գերմանական դպրոցի հայ երեխաների նախկին ուսուցիչ Գրետէրը շուէյցարացի Ֆորէլի տրամադրութեան տակ դրաւ մի յայտարարութիւն, որը ստորագրուած է նոյն դպրոցի երեք ուսուցիչներից, որոնցից է և գերմանահպատակ Նապաժին—1915 Թ. հոկտեմբերին ներկայացուել է Գերմանիոյ արտաքին գործերի նախարարութեան։ Ֆորէլը իր նամակում հրատարակում է այդ վաւերագիրը, միաժամանակ խիստ բողոքով ամբողջ հայ ազգութեան գազանային բնաջնջման դէմ։ Յայտարարութիւնը, ի միջի այլոց, հաղորդում է, որ 2—3 հազար առողջ հայուհի քշել են Հալէպ։ Գեղեցիկ կանանց բռնաբարել են, տգեղներին ծեծել են և Թողել սովամահ։ Եւրոպացիներին արգելել են կերակրել քաղցածներին։ Ամեն օր քաղաքից դուրս էին տանում հարիւրաւոր դիակ։ Շատ կանայք իրանց վրայ գործադրուած չարչարանքներից խելագարուել են։

Յայտարարութեան հեղինակները նախազգուշացրել էին, որ նոր սարսափելի նախճիրներ (հեկատոմբներ) են սպասւում։ Որպէս ապացոյց յայտարարութիւնը առաջ է բերում Ջէմալ փաշայի կարգադրութիւնը, որով զինուորական դատարանի սպառնալիքով Բաղդադի ճանապարհի ինժեներներին արգելւում էր լուսանկարներ հանել հայերով լի գնացքների։ Ինչպէս ասւում է յայտարարութեան մէջ, գերմանական կառավարութիւնն արդէն վաղ ստացել է հաղորդագրութիւններ այն սարսափների մասին, որ Թափուել են հայերի գլխին, որ սակայն ոչ մի հետևանք չունեցաւ և ոչինչ չը փոխուեց։ Յայտարարութեան հեղինակները մատնանշում էին, որ գերմանացիները իրանց անտարբերութեամբ արատաւորում են իրանց ոչ միայն եւրոպացիների, այլև կրթուած Թիւրքերի և արաբների աչքում։ Տեղացիները հաւատացնում էին, որ բոլոր կատարուածը եղել է գերմանական ազդեցութեան հետևանք։

Յայտարարութեան հեղինակները հրաժարուել են իրանց ուսուցչական պաշտօնից, համարելով ուսուցչի աշխատանքը այդպիսի պայմաններում, տիրող սարսափների հանդէպ, մի տեսակ ծաղր մարդկային զգացմունքների։

Բեքստոն. Վերապատուելի Բեքստոնը երեք ամիս հայերին օգնելուց յետոյ՝ վերադարձել է Անգլիա, և Daily Chronicle Թերթում հաղորդում է, որ 2 միլիոն տաճկահայերից մինչև կէս միլիոն կոտորուած է, մի միլիոն տեղահան է արուած դէպի Տաճկաստանի խորքերը, իսկ 200,000-ից աւելի հայ փախել է Ռուսաստան։ Հալէպի և Մուսուլի միջև կենտրոնացած հայ ժողովրդի բանակներում հայերից շատերը մեռնում են քաղցից և զրկանքներից։ Բեքստոնը կոչ է անում անգլիացիներին՝ հայերին օգնութեան հասնելու։

## ՎԱՅՐԵՆԱՑԱԾ ՀԱՅ ԵՐԵԽԱՆԵՐ

«Le Journal»-ի յայտնի աշխատակից Անրի Բարբին, որ մի շարք յօդուածներում նկարագրել է հայերի կոտորածը Թուրքերի ձեռքով, հաղորդում է նոր իրողութիւններ Թուրքերի գազանութեանց։ Ի միջի այլոց Բարբին պատմում է, Թէ որչափ սարսափելի, որչափ անօրինակ սարսափելի է հայ երեխաների վիճակը, որ մնացել են անծնող, առանց ծանօթների, քայքայուած գիւղերում, ուր մինչև իսկ հասակաւորը դժուարութեամբ կարող էր ջուր և կերակուր գտնել։ Այս լքուած և բախտի քմահաճոյքին Թողնուած երեխաները բոլորովին վայրենացել են։ Անրի Բարբին պատմում է հետևեալ դէպքը.

Երբ որ կոզակները նուաճեցին մի բոլորովին քարուքանդ եղած հայ գիւղ, երևացին մի քանի հայ մանուկ, որոնք ճանապարհի մօտ մի ինչ-որ բանով եռանդագին զբաղուած էին, կարծես Թէ չէին լսում ոչ կոզակների մօտենալը և ոչ էլ ճիչուկանչը։ Երբոր ականատեսները, որ այս անցքը հաղորդել են Բարբիին, մօտեցան մանուկներին, նոքա տեսան մի սարսափելի պատկեր։

Երեխաները քաղցի ժանչիւնով և ինչ-որ անասնական շարժուածքներով ձեռքերով և ոտամներով պոկում էին ընկած ձիու դիակի միսը, որից անտանելի հոտ էր փչում։ Մանուկները միայն այն ժամանակ նկատեցին կոզակներին, երբ սրանք սկսեցին նրանց քշել հեռացնել։ Այս վայրենացած երեխաները՝ մարդիկ տեսնելով սկսան վայրենի աղաղակներ բարձրացնելով փախչել։ Միայն յաջողեցին բռնել մէկին, որ յանձնուեց «Կարմիր Խաչի» գթութեան քրոջ խնամքին։ Սակայն դժբախտ մանուկը դարձել էր բոլորովին մի անասունի ձագ։ Նա բոլորովին կորցրել էր խօսելու ընդունակութիւնը և միայն կարողանում էր մռմռալ։ Միայն հում կերակուր էր ուտում, վրայ պրծնելով և վայրենի գոռում-գոչումով։ Ջնայելով շրջապատողների բոլոր ջանքերին՝ այս վայրենացած մանուկը ոչ մի կուլտուրական ներգործութեամբ չէր ենթարկւում։ Եւ այսպիսի անասնաձագ երեխաներ, ինչպէս ասում էր Անրի Բարբին, շատ շատ են պատահում։

(Кавхазское Слово № 177).

### ՀԱՅԵՐԸ և ՄԵՔՔԱՅԻ ՇԷՐԻՖԸ

Երևում է, որ Մեքքայի մեծ շէրիֆը մեծ եռանդ է ցոյց տալիս իր իշխանութիւնը կազմակերպելու համար։ Նա աշխատում է հրատարակել մի պաշտօնական շաբաթաթերթ, որի միջոցով պիտի հաղորդէ ժողովրդին իր կարծիքներն ու տեսակէտները։

Նա մի արաբ կառավարիչ է նշանակել Ջէդդայի մաքսատների վրայ։ Նորեկ կառավարիչը գործակցութեան է հրաւիրել բազմաթիւ հայերի, որոնք անկախութեան յայտարարումից առաջ ապրում էին Ջէդդայում։ (Matin № 1848.)

## Գրականութիւն

### ՊԱՏԵՐԱԶՄ

II

### ՄՕՐՍ ԱՂՕԹՔԸ

ՆՈՒԷՐ ՍՊԱՅ ԵՂԲՕՐՍ

*Տեմնում եմ ինչպէս խաղաղութեան մէջ,*
*Լուռ վերջալոյսին ամէն իրիկուն*
*Ծնրում է մայրս—հեծեծում դժգոյն,*
*Ու ջերմ մրմնջում իր աղօթքն անշէջ...*

*—Վսե՜մ Երկնաւո՛ր կանչում է սրտում,*
*Վշտահարների միակ կարեկից,*
*Փրկի՛ր ամենքին էս մեծ կռւից,*
*Վերջը պահպանի՛ր իմ անո՛ւշ որդուն»։*

Նիկ. Բեալաշեան

13 յուլիս 1916 թ.
Էջմիածին

### ՆԱՀԱՆՋԻ ԴՐՈՒԱԳՆԵՐԻՑ *)

### ԼՈՒՍՆԱԿ ԳԻՇԵՐԻՆ

Մեզ պէս քնատ ու գունատ լուսինը դուրս եկաւ ամպերի տակից։ Կարաւանը զարթնեց։

Եզներն ու կովերը նորից սկսեցին բառաչել, այծերը՝ մկըկալ, ոչխարները՝ մայել ողորմագին։ Քնաթաթախ երեխաները ճչում են, սայլերը ճռնչում։ Նեղ ու կիսաքանդ կամրջի վրայ սկսել է ժխոր, իրարանցում։

Կարաւանը շարժւում է։

Ցերեկուան բարաքեաթը (շնորհը) տեսնելուց յետոյ ամէն ոք ձգտում է գիշերով ճամբորդել, թէկուզ դեռ չկազդուրած իր ուժերը։

Մենք էլ ենք ոտքի։ Ուզում ենք ամենից առաջ խեղճ եզի բեռը թեթևացնել։ Գետին ենք թափում բեռների բովանդակութիւնը և սկսում ջոկջկել... Մայրս լաց է լինում, չի ուզում բաժանուել իր «մատ-եղընգով կարած» շորերից... և վերցնում է երկու ծանր կապոց ու տանելով մի անծանօթ սելւորի, աղաչում է նրան, որ տեղաւորէ սայլի մի անկիւնը, կովկաս հասնելուց յետոյ կէս անելու խոստումով։ Գիւղացին հազիւ է գիջում մօրս թախանձանքին, և մայրս ուրախ է իր յաղթանակովը...

Խառնւում ենք կարաւանին։ Կամրջի անցքը անկարելի է։ Անասունների և սայլերի շղթան բռնել է արդէն կամրջի լայնքն ու երկայնքը, որոնց արանքից միայն ոչխարներն ու այծերը կարողանում են սլքտալով անցնել։

—Կայնէ՜ք...,—բղաւում է մէկը կամրջի միւս գլխից.—եզը նստեր ի, ոտքը ճռացերի կարմնջի ճեղքը...

Անցնելու հերթը մերն է այժմ։ Վախով և զգուշութեամբ քշում ենք եզները։ Այնպէս պաղատագին «հօ, հօ» ենք ասում, որ եզն էլ հասկանում է կարծես մեր միտքը, ըմբռնում մեր հոգեկան տագնապը։

Փոշելից խճուղին նորից բացւում է մեր առաջ, բայց փոշին չի երևում լուսնի շողերի տակ, ձուլւում է կարծես համատարած սպիտակութեանը մէջ։

Մեր սեփական բեռները շալկելու մէջ ես վարպետ ենք դարձել այսօր։ Բանդած վերմակի երեսներովը կապոտել ենք այդ մեր մէջքին և ձեռքներս համեմատաբար ազատ պահել՝ շարժում կատարելու համար։

Գնում ենք, գնում միօրինակ, տաղտկալի՜, աչքներս միշտ դէպի հիւսի՜ս, դէպի փրկիչ Մասիսը, որ սակայն շա՜տ հեռու է դեռ...

Ինքնաբերաբար արագանում են քայլերը։ Այդ գիշերային զովութեան մէջ մարմնի թեթև տաքութիւնը հաճելի ապաւորութիւն է թողնում մեր վրայ և ոտքերնիս բացւում է։ Նոյն աշխոյժը նաև անասունների բով, որոնք արդէն գնում են առանց ծեծի։

Հետզհետէ պատահում ենք զարմացնող տեսարանների—մարդկային գիւտե՜ր, որոնց ստեղծողը անհերևակայելի կարիքն է եղել միայն։

Ահա այծեր՝ որոնք անտրտունջ կրում են խուրջիններ, հացի պաշարների փոքրիկ ծանրութիւնները... Ահա չէյթան արաբաներ (ձեռնասայլ), որոնց մէջ հանգիստ քնել են մէկ կամ երկու երեխաներ, անփոյթ թէ ինչքա՜ն է քրտնում սայլակը քշող հայրը։ Ահա և մարդկանցով լծուած մի խոշոր սայլ. ինչ սայլ, մի գոյգանիւ, որի վրայ հապճէպ յարմարեցրել են մի քանի տախտակներ, շինել մի լծափայտ, բարձել իրենց ուտելիքն ու իրերը, նստեցրել իրենց փոքրիկներին ու իրենք, տղամարդիկ լծուել՝ «բաղդաւոր մարդ»-ու գոհունակութեամբ... միտքս է ընկնում ճապոնական կառքը. սակայն նրա անիւները թեթև են ու արագասահ։

Անի՜ւ, անի՜ւ, դու ես կրել մարդկային քաղաքակրթութեան ամբողջ ծանրութիւնը, այժմ էլ, ակամայ, կրում ես ահա այդ քաղաքակրթութեան ստեղծած գուլումի բեռը... Ջէնք և Անիւ,—ահա այս դարու փրկութեան գործիքները։

Լուսաստղի հետ սկսւում է կծու ցուրտը։ Բրտինքը սառչում է մեր մարմնին։ Ստիպւում ենք փութացնել քայլերը՝ արհեստական տաքութիւն ստեղծելու համար, մինչև ծագում է յուլիս 19-ի արևը և իր առաջին հաճելի ճառագայթներովը տաքացնում մեր կռնակը։

¹) Տես «Համբաւաբեր» № 32.

Այդ հաճոյքը, սակայն, շուտով փոխւում է տանջանքի։ Երեկուան օրը նորից կրկնում է իր տառապանքը. ծարաւն ու փոշին, քրտինքն ու յոգնութիւնը սպառում են մեր ուժն ու համբերութիւնը։ Արդէն տեսնում ենք ճանապարհի եզերքին իրենց չալակների վրայ պառկած, քնած կանանց ու երեխաներին, որոնց մեղքանում ենք ձայն տալ։

—Դէ, դէ, ձե՛ մեռնեմ, ահա՛ հասանք, Գ է օ լ ի ն կերևայ, պաղ աղբիւր կայ էն տեղ,—ոգևորում են իրար մարդիկ։

Ցերեկուան ժամի 10-ին հասնում ենք վերջապէս Գէօլին, որ այժմ վերածուած է զինուորական կայարանի։

Գիւղական ճահիճ—լճակի ափին քցում ենք բեռները ու փռւում ճանճերի ու արևի տակ…

Մի աղբիւր միայն ունի գիւղը, սառն ու առատ։ Խաղաղ ժամանակ նա կարող է երկու գիւղ գոհացնել իր ջրով. իսկ այժմ ո՞ր մէկի բերանը թրջէ։

Աղբիւրի առջև կայ մի աւազան՝ գիւղացոց անասունները ջրելու և կանանց լուացքի համար։ Անթիւ բազմութիւն գլուխ է կոտրում մի բաժակ ջրի վրայ։ Կռիւ, աղաղակ, ծեծ, հայհոյանք, ջրի մէջ հրել մէկ-մէկի…—և յաղթանակը մնում է միշտ ուժեղներին, զինուածներին, որոնք իրենց ամանները լցնելուց յետոյ, իրենց ազգականների մասին էլ են հոգում։ Իսկ թոյլերն ու անտէրները սուսիկ-փուսիկ կամ մոքում անէծքներ թափելով՝ գոհանում են աւազանի կեղտոտ, պղտոր ջրով, որից նոյնիսկ շատերն են զրկւում՝ խռնուող անասունների ոտից կոխան չդառնալու համար…

Թոչնիկ

---

## ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

Ստացանք հետևեալ հրատարակութիւնները՝ հեղինակութիւն Ծերուն Վիրաբեանի. «Լքուած Քնար»ը, գինը՝ 6 կոպ., «Միսաք» գինը՝ 7 կ., «Էշի Դերձակ», գինը՝ 20 կ., «Մեղեդիներ», գինը՝ 10 կ., «Եղսօն» գինը՝ 5 կ.։

---

# Պ ա տ մ ա կ ա ն

## ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ ՔՐԴՈՒԹԻՒՆԸ *)

Բ.

Մենք յիշեցինք միայն գլխաւոր աշիրէթները՝ զանց անելով անօգուտ մանրամասնութեանց մէջ մտնելու, որովհետև իւրաքանչիւր աշիրէթն ունի իր բազմաթիւ ճիւղաւորումները ու շերտաւորումները։

Միայն այսքան ըսել հարկէ, որ բոլոր քրդական աշիրէթները՝ բացի շէյխերէ, բաժնւում են երկու դասակարգերու՝ ա զ ա տ և ա ն ա զ ա տ, կամ՝ իրենց իսկ լեզւով, Թ ո ռ ը ն և կ ո ւ ր մ ա ն ջ։ Վերջինս ազգային անուն է և յատկացուած՝ անազատ դասակարգին և այս անունը ոչ միայն վիրաւորական է թոռընի համար, այլև ստորնացուցիչ։ Թոռընը կուրմանջ չէ, թոռընը թոռըն է։ Բառին ամենալայն իմաստով դասակարգային խտրութիւնը այսօր ևս գործադրութեան մէջ է։ Ազնուական թոռընուհին անմատչելի է կուրմանջին. իսկ կ ո ւ ր մ ա ն ջ կ ե չ է ն (աղջիկ) դժուար թէ երբ և իցէ թոռընի օրինական սիրուն արժանանայ։

Ա մ ո ւ ս ն ա կ ա ն կ ե ա ն ք.—Թիւրքական հարեմի անծանօթ է քրդութեան. կանայք ազատ են և բացերես. կուրմանջ խ ի դ է ի կամ կ ե չ է ի սիրոյ ասպարէզը բաց դաշտերն ու սար ու ձորերն են. սիրահարական երգերու մեծ մասին հեղինակութեան պատիւը պատկանում է քրդուհիներուն։

*) Տես «Համբաւաբեր» № 32։

Խ ա լ ա ն ի կամ բ ա շ լ ը ղ ի դրութիւնը աւելի մեծ չափով ընդունուած է քրդերու կողմէն. և շատ անգամ փեսայի ազգականները օգնում են նորան դրամով և կամ անասուններ ընծայելով։ Հարսնացուի ընտրութիւնը թողնուած է փեսային, ըստ այնմ թէ՝ «բուք բը դըլէ դաւէ է» (հարսը փեսայի սրտովը պէտք է լինի). բայց խօսք առնելու, նշանատուութեան և մ ա ր—ե լ ու (ամուսնացնելու) պարագներուն և հարսնևորներու ներկայութեանը հարս ու փեսայի կամքը կարտայայտուի փոխանորդներով։ Փոխանորդները կամ իրենց հայրերն են, կամ ուրիշ անձեր։

Բերուած նոր հարսը գեղի բոլորը պտտեցնելէ յետոյ պսակւում են և փեսայի հետ առանձնացնում և զինուած մի անձն տան կամ սենեակի երդիկին վրայ կանգնած՝ հարցնում է՝ «բո՞ւ, նա՞բու»—եղա՞ւ, չեղա՞ւ և երբ դրական պատասխան ստացաւ, հրացանաձգութեամբ յայտարարում է «բու»-ն ի լուր հասարակութեան։ Հարսը պարտաւոր է կուսութեան ապացոյց տալ. հակառակ պարագային՝ մահն ու տ ա լ ա ղ ը [1]) իրեն կը սպասեն։

Տ ա լ ա ղ ը՝ իբրև հետևանք բազմակնութեան և թոյլատրուած ղուրանէն շատ տեղի է ունենում։

Մարելու ծիսակատարութեան ժամանակ մոլլան կը վերցնէ երեք քար և աղօթելէ յետոյ մէկը կըտայ աղջկայ հօրը կամ սորա փոխանորդին, երկրորդը՝ տղայի հօրը կամ նրա փոխանորդին, իսկ երրորդը ինք կը վերցնէ։ Եթէ մէկը երեք քար վերցնելով երեք անգամ կրկնէ հետևեալ նախադասութիւնը. «մըն սէ կեավրէ տալաղ է խո աւէթ բէ ֆէթվաի» [2]) և քարերը նետէ, կինն անդարձ կերպով արձակուած կը լինի։ Եւ եթէ ապագային զղջայ էլ չպիտի կարողանայ նորա հետ ամուսնանալ. մանաւանդ երբ կինը երկրորդ ամուսնութեամբ կապուած է ուրիշի հետ։ Եթէ ամուսնացած չէ կինը, բայց որովհետև տ ա լ ա ղ-ով արձակուած է, առաջին ամուսնու հետ ամուսնանալու համար հետևեալ միջոցներուն են դիմում. մի աքաղաղի վրայ մ ա ր ը կը կտրեն և կենդանու գլուխը թռցնելով կինը օրինաւորապէս ի վիճակի կը լինի ամուսնութիւն կնքելու։

Իսկ եթէ կինը ամուսնացած է և երկրորդ այրը չուզենայ վերադարձնել զայն, փ ր կ ա ն ք կառաջարկուի, որ շատ անգամ կ'ընդունուի։ Ջաշ-ըլ-խատի-ի անպարկեշտ միջոցին ևս դիմումներ կըլնեն, որուն բացատրութիւնը համեստութեան անպատշաճ լինելով՝ զանց ենք առնում։ Փափագողները կարող են իմանալ թիւրքահայ քրդաբնակ գիւղերու հայ բնակիչներէն, որոնք այսօր գտնւում են Կովկասի բոլոր կողմերը։

Բ ա լ ա ք ի քրդերը առանց ապահարզան տալու իրենց կիները կարող են փոխանակել վերադիր վճարով։ Բայց տեսնուած չէ որ մի թոռըն իր կինն արձակէ, և այս անշուշտ այն պատճառով՝ որ թոռըն կինը չ'ընկնի կուրմանջի ձեռքը, ինչ որ մեծ ստորնութիւն է համարւում։

Մ ա հ ո ւ ա ն ս ո ւ գ ը.—Մահուան առթիւ մեծ սուգ են կապում. պէտք է որ մեռողին հեռաւոր ու մերձաւոր ազգականները, ծանօթները ու բարեկամները ս ա ր-խ ո շ ի (ժողովրդական բառով՝ գլուխ հարցնել—մխիթարել) երթան։ Մեռնողը եթէ թոռըն է, մայրը, կինը, քոյրերն ու մերձաւոր ազգականուհիները կարգով կը նստեն, մէջտեղ կը դնեն նորա գլխարկը (քոլոզ), հանդերձները, զէնքերը և հերթով ու մէկիկ մէկիկ կսկսեն յանպատրաստից երգեր յօրինել ու գովաբանել մեռածին զանազան բարեմասնութիւնները, կատարած քաջութիւնը են։ Երբ մէկ երգողը կը դադրի երգելէ, մէկէն խմբովին կսկսեն բարձրաձայն լալ. յետոյ երկրորդը, երրորդը…։

Քրդական այս սովորութիւնը, որ զուտ ազգային է, յիշե-

[1]) Տ ա լ ա ղ կամ թ ա լ ա գ արաբերէն է, ներգործականն այդ բային է՝ թ ա թ լ ե գ, որ կը նշ. արձակել, ապահարզան տալ։

[2]) Ես ամուսնութեանս երեք քարը ձգեցի առանց կրօնական սէէ ֆէթվայի—կրօնական արդարացուցիչ վճիռի։

Առեանին, ուր Մահմէդ կը բարեխօսէ իր հետեւորդներուն եւ կը տանէ ջէննէթը, որտեղ կան կենդանի ջրեր, արմաւի ծառեր եւ սեաչեայ հուրի փերիներ (կոյսեր), որոնց աչքերը «աւազի տակ թաղուած ջայլամի հաւկիթներուն են նմանում»։ Իւրաքանչիւր միւսլիման կարող է մինչեւ 40 հատ այդպիսի սեաչեայ օրիորդներ ստանալ...։ Իսկ Քրիստոնեաները նախատինքի պիտի արժանանան նոյն իսկ Յիսուսի կողմից, որ չեն հաւատացած վերջին մարգարէին—Մահմէդին. ուստի դժոխք պիտի երթան։ Նրանք—Քրիստոնեաները—իրենց ուրացութեան պատճառով, նոյն իսկ աշխարհիս վրայ էլ ապրելու արժանի չեն եւ ոչ էլ թաղման, հողի ներքեւ ծածկուելու։ Ասածներս ապացուցանելու համար այստեղ առաջ ենք բերում բնագիրն ու թարգմանութիւնը մի հին թաղման հրամանագրի—որովհետեւ առանց արտօնութեան հին ժամանակ քրիստոնեաները թաղուելու իրաւունք չունէին։

«Վարիսի լիրասի զաթրանի, համիլի թաճի շէյթանի, մէրսուսի խնամանի ըէբբանի ղարա փափաս քի սէն սին, բու քէրրէ ջինսինիզդէն բիրինին հէլաքիյլէ հէր նա ղադար լաշէի մինդարընի թօփրաղա թէսլիմի լայեգ դէյիլ սէ դէ, էհլի իսլամըն թէնէֆֆիւս էյլէ դիկկի հէվաիս միւլէվվէս էթմէ մէք իչին, լաշէսի ջէհէննէմէ վէ ջանընը չէյթանա թէսլիմի էմր օլընուր»։

Թարգմանութիւնը.—Դու, ով աղանդաւոր վարդապետ, որ կրօնական սեւ հանդերձ հագել ես, սատանայի թագ ես կրում եւ աստուածային շնորհներէն մերժուած ես, քու տոհմակիցներէն մէկը այս անգամ սատկած լինելով, որքան որ արժան չէ որ իր մարմինը հողին յանձնուի, բայց որպէսզի հաւատացելոց—միւսլիմաններու—շնչուած օդը չապականուի, հրամայում ենք, որ իր դիակը դժոխքին ու հոգին սատանային յանձնուի։

Զննելով այս մոլեռանդ արտայայտութիւններուն, որոնք ներկայիս բաւական մեղմացած են, իբրեւ հետեւանք հայերու հետ ունեցած իրենց դարաւոր շփման, գտնում են նաեւ մոլլաներ, որոնք Աստուծոյ մասին արտայայտւում են բարձր—փիլիսոփայական գաղափարներով։

Իմ հարցին՝ թէ ո՞ւր է Աստուած.

—Այդ հարցումը Մուսան ալ արած է Ալլահին, պատասխանեց Խոթանլու գիւղացի մոլլա շէյխ Ապդիւլ Աղիզը. բե՛ր, ասած է Աստուած Մովսէսին, մի թաս կաթ եւ սաս ինձ, կաթի մէջ իւղ կա՞յ եւ ո՞ւր է գտնւում այն։

—Կաթի իւրաքանչիւր մասնիկին մէջ էլ իւղ է գտնւում, պատասխանած է Մուսան։

—Այդպէս էլ, աւելացնում է Եհովան, տիեզերքի իւրաքանչիւր հիւլէն կրում է իմ ներկայութիւնս։

Այդպէս չէ՞ եւ Գր. Նարեկացու դաւանութիւնը. ըստ այնմ թէ՝ «զի դու միայն ես յերկնի անճառ եւ յերկրի անզննին, ի տար գոյի եւ հեզրս ծագաց աշխարհի, սկիզբն ամենայնի եւ յամենայնի ամենայն լրմամբ»։

Ծանօթ.—Յիսուսի վերջին գալստեան այնքան պինդ հաւատում են եղել մահմէդականները, որ Դամասկոսի մեծ ջամու քով միշտ ճերմակ ձորի կը պահեն եղել եւ ամեն ուրբաթ օր, զարդարելով ջամու դրան առջեւ կանգնեցնում են մինչեւ որ հաւատացելոց աղօթքը լրանայ։ Յիսուս որ ուրբաթ օրմը պիտի գայ, այդ ջորին հեծնելով Մէքքէ պիտի երթայ եւ տեղի՝ Աղ-ջամու մինարէն բարձրանալով ազան պիտի կարդայ (աղօթքի հրաւիրող բարձրաձայն աղօթք)։

Ս. Մովսէսեան

# Մամուլ

Կովկասի Փոխարքայի օգն. զօրավար Եանուշկեւիչի յայտարարութեան առթիւ, «Մշակ»ը իր № 170 խմբագրականում սկզբունքով համաձայն լինելով յայտարարութեան՝ ի միջի այլոց հետեւեալն է գրում՝ նկատի ունենալով Տաճկահայաստանի քաղաքական ու հողատիրական պայմանների առանձնայատկութիւնները.

«Ռուս իշխանութիւնը նորանուաճ գաւառներում չը պէտք է կրկնէ այն սխալը, որ նա արել է Անդրկովկասի նուաճման պահուն, երբ երկրի կարգերին ու տնտեսական կեանքին անծանօթ պաշտօնեաների շնորհիւ հայ-թուրքական գաւառներում ստեղծուեց կալուածատիրական դաս եւ գիւղացութեան հողերը պարգեւտրուեցին նախկին խանական գործակալներին։

«Թիւրքիայից գրաւուած վայրերում հողային հարցը աւելի է խճճուած։ Տասնեակ տարիների ընթացքում հայութիւնը այդ գաւառներից վտարուել է օտար աշխարհներ—Ամերիկա, Բուլգարիա, Եգիպտոս եւն։

«Ապա արտր աշխարհին յայտնի է, որ պատերազմի ընթացքում հայ տարրը վտարուել է իր տեղերից կամ ենթարկուել ջարդերի։ Նման քաղաքականութիւնը հետեւանք է ունեցել այն, որ Թիւրքիայում տիրող ազգերի ներկայացուցիչները կամ ուղղակի տիրել են հայերի կայքերին—շարժական կամ անշարժ—կամ թէ «գնել» են այդ կայքերը ձեռնտու պայմաններով։

«...Կայ նաեւ այն կարեւոր հանգամանքը, որ պատերազմի շնորհիւ հայութիւնը դարձել է մի որբախնամ ազգ...»

Այս երեք կէտերը ակնարկելուց յետոյ թերթը յայտնում է, որ Ռուս իշխանութեան սրբազան պարտքն է նկատի առնել այս պայմանները յայտարարութեան գործադրութեան ընթացքում։

«Հորիզոն»ն էլ այդ խնդրին նուիրուած իր առաջնորդողում երեւան բերելով Տաճկահայաստանում ապրող հայ ժողովրդի այդ երկրի վրայ ունեցած բնական եւ հողատիրական իրաւունքները, գրում է.

«Ովքե՞ր աւելի իրաւունք ունին.օգտուելու Տաճկա-Հայաստանի ազատ հողերից, քան իրենք Տաճկահայերը, որոնք այս պատերազմի ժամանակ անլուր զոհեր են տուել, աներեւակայելի տառապանքներ կրել։ Եւ ինչ կսկիծ պիտի զգայ բովանդակ հայութիւնը, ուր էլ նա ապրելիս լինի, եթէ նրա աչքի առաջ տաճկահայ ժողովրդի արիւնով ցօղուած հողերը յանձնուեն ուրիշներին մշակութեան համար, իսկ այդ ժողովրդի թշուառ բեկորները վիզերը ծռած մի կողմ քաշուեն»։

Վերոյիշեալ հայ թերթերը մոռանում են նաեւ մի շատ կարեւոր հանգամանք. այդ այն է՝ որ ներկայ պատերազմի ընթացքում թիւրք կառավարութիւնը ապօրինի կերպով փախստական հայերի կալուածքները հնարովի վաւերագրերով հաստատել է թիւրք ժողովրդի ազգեցիկ եւ հողազուրկ դասակարգի վրայ։

Տաճկահայաստանի այս մասնաւոր առանձնայատկութիւնները եթէ նկատի չառնուին՝ այն ժամանակ թերեւս ամբողջ մեր թիւրքահայ եղբայրակիցները զրկուեն իրենց սեփական կալուածներից, իրենց քրտինքով ու արիւնով ցօղուած հողից։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

### ՄԻՐԱՔԵԱՆ ՏՈՀՄԻՆ (ՔՂԵՑԻ-ԴԵՐՍԻՄՑԻ) Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ

Ի նկատի ունենալով որ Տաճկահայաստանի նոր նուաճած տեղերից հայեր են գաղթում դէպի Կովկասի սահմանները, եւ ենթադրելով որ նրանց թւում կը գտնուին նաեւ մեր հարազատնե-

րից և ազգականներից, Մ ի ր ա ք ե ա ն տ ո հ մ ի ց Բղեխ քաղաքացի (ծագումով Դերսիմցի), խնդրում եմ այն հայ յանձնաժողովներից, որոնց հովանաւորութեանը տակ լինին, իմացնեն մեզ հետևեալ հասցէով՝ Харьковъ, Николаев. площ. домъ Петроград. Междун. Коммер. Банка, М. Миракьяну, որով և մենք ի վիճակի կը լինենք միջոցներ ձեռք առնելով այս կողմը բերելու, առանց ձգելու, որ ազգային հաստատութիւնների վրան բեռ լինեն։

Լիայոյս եմ, որ գաղթականների և ուղարկողների պաշտօնեաներին և ընտանիքների նոր դրութեան մասին մանրամասն կը հասկցնեն ներքանց։

Միհրան Միրաքեան

## ՎՐԻՊԱԿ

1. «Համբաւաբեր»-ի № 32, սիւնեակ 1016, տող 20 երորդ վերևից, «Աչերըդ սև-ևս»ը պէտք է լինի՝ «աչերըդ սև-սև»։

2. Նոյն №-ի 1010 երրորդ սիւնեակում տպագրուած «Տաճկահայաստանի գաղթականում» յօդուածի ներքև մոռացուած է յիշել «Рѣчъ» թերթի անունը։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

### Կորած անձինք

Այգեվարդ Արրահամեանցը փնտրում է մօրը՝ Կարան 50—55 տարեկան, եղբայրներին՝ Արշաւիր՝ 15 տ., Գարեգին՝ 13 տ.

2—2

Հայկակ. Կենտրոնական Կոմիտէի բոլոր մասնաճիւղերում վաճառւում է

ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԵԱՆԻ

### ԵՐԿՈՒ ՔՈՅՐ

(ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ)

Գինն է 1 ռուբլի։ Այս գրքի վաճառումից գոյացած գումարի 30% հրատարակիչը դնում է Հայկ. Կենտ. Կոմ. տրամադրութեան տակ։

5—1

### ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿՈՒՄ ՎԱՃԱՌՒՈՒՄ ԵՆ

«Ալ. Պօղոսեանի» ֆոնդով հրատարակած հետեւեալ գրերը՝

Ս. ՄԵՍՐՈՊ, Լէօի . . . . . . 75 կ.
ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ՋՐԵՐ Տուրգենևի, թարգ. Լ. Դանիէլեանի . . . . . . . 35 կ.
ԳՒՒՂԻՑ ՊԱՏԿԵՐՆԵՐ, Վ. Փափազեանի . . 50 կ.
ԾԱՂԻԿՆԵՐ, Յ. Ագաբարի . . . . . 20 կ.

Հարիւրից աւելի գնողներին 25% զեղչ.

Դիմել՝ Тифлисъ, Абасъ-Абадская пл. 7. Армянское Благотв. О-во на Кавказѣ.

4—4

### ԴԻԼԻՋԱՆԻ

որբանոցների համար հարկաւոր է ՈՒՍՈՒՑԻՉ-գիւղատընտես։ Ցանկացողները պէտք է դիմեն՝ Թիֆլիս, Բարեգ. Ընկ. գրասենեակ.

Абасъ-Абадская площадъ, д. № 7. կամ Դիլիջան պ. Տիգրան Ասլանեանի։

### ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԱՐՀԵՍՏԱՆՈՑՈՒՄ

Գանովսկայա փող. № 3. ծախւում են երեխաների շորեր մաշկեղի գներով, որբիչներ, ծրարներ, փոստի թուղթ և այլն։ Ընդունում են պատուէրներ աթոռների վերանորոգութեան։

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

### կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւտնական գրքեր։ Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.